ՆԱՆԴՈՒԳԵԴՑԻ

# ԱՐԹՈՒՐ ԿՈՐՏՈՆ ԲԻՄԻՆ

## ՊԱՏԱՀԱՐՆԵՐԸ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. Ե. Վ. Զ.






ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՏՊԱՐԱՆԸ

1857. ՌՅԶ.

# ՆԱՆԹՈՒՔԷԹՑԻ

# ԱՐԹՈՒՐ ԿՈՐՏՈՆ ԲԻՄԻՆ

## ՊԱՏԱՀԱՐՆԵՐԸ



ԺԱՄԱՆԱԿԸ հասած էր որ ամէն տարուան սովորութեան համեմատ քանի մը շաբաթ Նոր Պետֆըրդ՝ իմ ազգականներուս քով անցընէի. բայց իմ բաղձանքս էր փոխանակ նաւարկելու պատրաստ նաւով մը նոյն տեղն երթալու, կիտորսութեան նաւով մը ճամբորդութիւն ընել, որն որ Կրամբուս կ՚անուանէր, եւ իմ Աւգոստ բարեկամիս հօրը՝ Բեռնարդ նաւապետին հրամանին տակ էր։ Աւգոստ խոստացաւ ինծի նաւուն մէջ պահուըտելու յարմար տեղ մը գտնել, ուր ես քանի մ՚օր պահուած պիտ՚որ մնայի, մինչեւ որ Կրամբուս ցամաքէն հեռանար եւ ա՛լ նորէն ետ դառնալու եւ զիս ձգելու վախ չըլլար։ Անկէ ետքը դուրս պիտ՚որ ելլէի եւ միւս նաւորդներուն հետ ամէն հանգստեան հաղորդ պիտ՚որ ըլլայի։ Նաւապետը զուարթ մարդ մըն էր եւ աս կատակին տհաճութիւն չէր ցուցըներ։ Ծնողացս՝ որոնք զիս Պետֆըրդ կը կարծէին, իմ վրաս տեղեկութիւն մը տալու համար նաւ պակաս չէր։

Խորհուրդս ի գործ դրուեցաւ։ Նոյն օրն որ զիս Պետֆըրդ տանելու նաւն առագաստները պարզած՝ նաւահանգստէն դուրս կ՚ելլէր, ես նաւավարի զգեստով Աւգոստին ընկերութեամբը կի-

տորսի նաւը մտայ, որուն մէջ նոյն ժամանակը միայն երկու նաւավարք կային, որոնք նաւուն ցռուկին մօտ գործքի մը զբաղած էին։ Առանց անոնցմէ տեսնուելու կարող եղանք մեծ սենեակ մը մտնել՝ որն որ կիտորսի մը համար արտաքոյ կարգի գեղեցիկ զարդարուած էր։ Անկէ չորս պաշտօնակալի խցերը մտանք՝ որոնք վառարաններով, ամէն տեսակ կարասիքով եւ ծանրագին գորգերով զարդարուած՝ փառաւոր տեսք մ՚ունէին։ Աւգոստ ինձի երկայն ժամանակ աս փառաւորութեանց վրայ զարմանալու թող չտուաւ, այլ փութաց իմ թագստեան տեղս գտնել։ Զիս իր խուցը տարաւ, որուն դուռն ետեւէն զգուշութեամբ կղպեց. աս խուցը շատ գեղեցիկ էր, պատին վրայ լայն անկողին մը հաստատուած էր, սեղան մ՚աթոռ եւ գրքատուն մը ճամբորդութեանց եւ բնապատմական գրքերով լեցուն՝ զանիկայ կը զարդարէին։ Ուրիշ շատ կարասեաց մէջ պզտիկ դարան մ՚ալ տեսայ զորն որ Աւգոստ տեսակ տեսակ ազնիւ ուտելիքներով եւ ըմպելիքներով զարդարած էր։

Բարեկամս գետինը փռուած գորգը վերցուց եւ ինձի խցին մէկ անկիւնը 16 մատնաչափ քառակուսի կտրուած տեղ մը ցուցուց, ուսկից ներս մտնելով՝ նաւուն մթերանոցը կրնար երթըցուիլ. Ճրագ մը վառեց, լապտերի մը մէջ տնկեց եւ ծակէն վար իջնալով ինձի ալ ըսաւ որ իր ետեւէն երթամ։ Վար իջնալէն ետեւ տախտակը նորէն գոցեց, եւ որովհետեւ գորգն անոր վրայ գամուած էր, ոչ ոք կրնար մեր անցած տեղն իմանալ։

Շատ դժուարութեամբ լապտերէն արձակուած նուազ լուսով կրնայի ան ամէն տեսակ բեռներով լեցուած տեղւոյն մէջ յառաջ երթալ։ Կամաց կամաց աչուըներս մթութեան վարժեցան, եւ բարեկամիս զգեստէն բռնելով սկսայ դիւրաւ քալել, եւ մինչեւ երկաթէ շղջանակներով հաստա-

տուած մեծ արկեղ մը քով հասանք։ Աս արկղն՝ որ խեցեղէն ամաններու արկղ մը կը նմանէր, չորս ոտք բարձրութիւն եւ 6 ոտքէն աւելի երկայնութիւն ունէր, բայց սաստիկ նեղ էր։ Եղէ կարասներ, անկողիններ, կողովներ, հաւու վանդակներ, արկղներ եւ ուրիշ տեսակ տեսակ աւարկաներ նոյն տեղը կատարեալ խառնակութիւն մը կը շինէին։ Խառնակութիւնը դիտմամբ եղած էր. Աւգոստ ամէն բան այսպէս իրարու վրայ նետելով՝ դիզած էր, որպէս զի իմ թաքստեանս տեղը բոլորովին անյայտ ըլլայ, եւ աս գործողութեան ատեն միայն մէկ հոգի իրեն օգնական ունէր՝ որն որ նաւէն դուրս մնաց։

Ընկերս ինծի իմացուց որ արկեղ մէկ կողմն ուզուածին պէս կրնար բացուիլ ու գոցուիլ։ Իր նեսի կողմն անկողին մ'եւ ուրիշ հարկաւոր բաները կային, որչափ որ այնչափ պզտիկ տեղ մը կրնար բովանդակել։ Նաեւ այնչափ տեղ թող տրուած էր որ կրնայի հանգիստ պառկիլ ու շիտակ նստիլ։ Գիրք, գրիչ, թանաք ու թուղթ պակաս չէր։ Աւգոստ արկեղ քովն երեք հատ վերմակ, մեծ ամանով մը ջուր, պզտիկ կարաս մը լեցուն պաքսամատ, երեք կամ չորս մեծամեծ երշիկներ, մեծ խոզի ապուխտ մը, ոչխարի խորված ազդր մ'եւ 6 շիշ գինի եւ ուրիշ ըմպելիք դրած էր։ Զիս իմ բնակարանս դնելէն ետեւ, սեւ չուան մը ցուցուց՝ որն որ արկեղ կափարչին հաստատուած էր, եւ ըսաւ. "Եթէ բանի մը հարկաւորութիւն կ'ունենաս, կրնաս աս չուանը բռնելով մինչեւ խցիս ծակին դուռը հասնիլ,,։ Անկէ ետքն իզմէ բաժնուեցաւ, լապտերն, առատ ճրագ եւ տուփ մը լուցափայտ քովս թող տալով, եւ խոստացաւ որ որչափ որ առանց իմացուելու կարելի ըլլայ, ինծի այցելութեան կու գայ։

Երեք օր երեք գիշեր նոյն արկեղ մէջ մնացի, եւ միայն երկու անգամ դուրս ելայ, անդամներս

քիչ մը տարածելու եւ երկու հաւու վանդակ-ներու մէջ ոտքի վրայ կենալու համար: Աւգոստին ոչ երեսը տեսայ ոչ ալ ձայնը լսեցի, բայց ասոր վրայ ամենեւին հոգ չըրի. գիտէի որ նաւն ամէն րոպէ կրնար ճամբայ ելլել, եւ աս պարագայիս մէջ բարեկամս չէր կրնար առիթ գտնել իմ քովս գալու: Վերջապէս խցին ծակին բացուիլը լսեցի. Աւգոստ խորունկ ձայնով մ'իմ ինչպէս ըլլալս հարցուց եւ թէ բանի մը հարկաւորութիւն ունիմ: "Բան մը չեմ ուզեր, պատասխան տուի, եւ այնչափ աղէկ եմ որչափ որ գըտնուած վիճակս կը ներէ: Նաւն երբ ճամբայ պիտ' որ ելլէ,,: — "Անկէ կէս ժամ ետքն. ուզեցի քեզի ասոր լուրը տալ եւ միանգամայն ծանուցանել որ երկայն ատեն քովդ կարող պիտ'որ չըլլամ գալ: Նաւուն վրայ ամէն բան աղէկ է: Ձուանը բռնելով մինչեւ ծակին դուռն եկուր. զանիկայ գոցելէն յառաջ ժամացոյցս վրան կը կախեմ, որն որ կրնայ քեզի աղէկ ծառայութիւն ընել, վասն զի արեւին լոյսը քեզի չկրնալով հասնիլ, չես կրնար ժամանակին վրայ դատաստան ընել: Գիտե՞ս որչափ ժամանակ է որ աս տեղս բակուած ես. ամբողջ երեք օր է: Կ'ուզէի ժամացոյցը մինչեւ քեզի բերել, բայց կը վախնամ որ նոյն միջոցին կը կանչուիմ: Առ այժմ մնաս բարով,,: Անկէ ետքն իր երթալուն եւ դրան գոցուելուն ձայնը լսեցի:

Աւգոստին երթալէն ժամ մ'ետքը սկսայ յայտնի զգալ որ նաւը ճամբայ ելած է: Վերջապէս երկայն ճամբորդութիւն մ'ընելու բաղձանքիս իրօք հասնելուս մտածմունքն ինծի զօրութիւն տուաւ իմ նեղացուցիչ բնակարանիս մէջ լաւագոյն ապագայի մը յուսով համբերութեամբ կենալու: Ամէն բանէ յառաջ ուզեցի բարեկամիս թող տուած ժամացոյցը քովս առնուլ, եւ չուանը բռնելով՝ ան լաբիւրինթոսին մէջէն կարող եղայ

մինչեւ ծակին դուռն հասնիլ եւ ուղածս գտնել։ Իմ սրտնեղութիւնս քանի մը գիրք կարդալով անցընելէն ետեւ, վրաս սաստիկ քուն մ'եկաւ, որուն տեղի տուի, ճրագս մարեցի եւ քիչ մ'ետքն արդէն խոր քուն մտած էի։ Արթըննալէս ետեւ զգացի որ վրաս թմրութիւն մը կայ, եւ երկայն ժամանակ հարկաւոր եղաւ մինչեւ որ միտքս ժողվեմ եւ իմ վիճակիս վրայ որոշ գաղափար մ'ունենամ։ Երբ որ ճրագ վառեցի եւ ժամացոյցը նայեցայ, մեծ ցաւով տեսայ որ կեցած էր, որով չկրցայ իմանալ թէ քունս որչափ ատեն տեւեր է։ Ցեղւոյն նեղութենէն անդամներս գրեթէ չորցած էին եւ երկայն ատեն շփելէն եւ ոտքի վրայ կենալէն ետեւ հազիւ արեան շրջանը նորէն սկսաւ։

Զգացած սաստիկ անօթութիւնս ինծի յիշեցուց որ քունս մտնելէս քիչ մը յառաջ ոչխարի խորոված կերած եւ զանիկայ շատ ախորժելի գտած էի. ձեռքս անոր երկնցուցի, բայց որչափ զարմացայ երբ որ տեսայ որ բոլորովին հոտած էր։ Աս պարագան իմ հոգս շատ աւելցուց, վասն զի ասկէ իմացայ որ քունիս շատ երկայն տեւած է։ Նաւուն յատակին թանձր օդն իմ թմրութեանս եւ մսին աւրուելուն պատճառ եղած էր, եւ եթէ երկայն ատեն հոն մնայի, ինծի շատ վտանգաւոր կրնար ըլլալ։ Գլուխս արտաքոյ կարգի կը ցաւէր. կը զգայի որ դժուարաւ շունչ կ'առնում. անհամար տխուր երեւակայութիւններ թշնամւոյ բանակի մը պէս վրաս կը յարձակէին։ Ի վերայ այսր ամենայնի ան նեղ բնակարանէն ելլելը դեռ անկարելի համարելով, ստիպուեցայ համբերութեամբ սպասել։

Նորէն լարած ժամացոյցս ինծի իմացուց որ դարձեալ 24 ժամ անցած է. բայց դեռ ինծի օգնութեան եկող մը չերեւցաւ. չէի կրնար Աւգոստին դէմ իբրեւ անհոգ տրտունջ ընել։ Ամենէն աւելի զիս հոգի մէջ ձգողը ջրիս պակ-

սիլն էր, որմէ միայն քիչ մը բան մնացած էր, իսկ իմ ծարաւս երթալով կը սաստկանար եւ միշտ աւելի ջրոյ հարկաւորութիւն կ'ունենայի, որովհետեւ ուտելու ուրիշ բան չունէի բայց եթէ աղած ու համեմած երշիկ։ Ա՛լ գրքերն իմ հոգերս չէին կրնար փարատել. քնանալ չէի ուզեր, թէպէտ եւ սաստիկ քուն մ'ունէի, կը վախնայի որ տեղւոյն թանձր օդը զիս մէյ մ'ալ չարթընցընէր։

Նաւին անդադար շարժիլն եւ երերալը յայտնի կը ցուցընէր որ բաց ծովի վրայ ենք, եւ խորունկէն եկած թնդիւնը կ'իմացընէր որ հովը բաւական սաստիկ է, եւ ալիքները նաւին կը զարնեն։ Աս պարագաներուս մէջ Աւգոստին այնչափ ատեն չերեւալուն ամենեւին մեկնութիւն մը չէի կրնար տալ. ասոր համար որոշեցի որ 24 ժամ ալ սպասեմ, բայց անկէ ետքն ամէն վըտանգ յանձն առնելով մինչեւ ծակին դուռն երթամ, հոն զով օդ շնչեմ, եւ եթէ կարելի ըլլայ Աւգոստին հետ խօսիմ որ գոնէ իմ ջրի սափորս լեցընէ։ Աս խորհուրդներու մէջ եղած ատենս նոյն անյաղթելի քունն որն որ անգամ մը զիս նուաճած էր, նորէն եկաւ եւ ստիպեց զիս որ աս անգամ ալ տեղի տամ։ Զարհուրելի երազներ քունս ամբոխեցին. երբեմն կը կարծէի որ կատաղի դեւերու մէջ կը գտնուիմ, երբեմն զարհուրելի օձեր իրենց ցուրտ մարմնովը վրաս կը փաթթուէին. զարմանալի ծառեր մարդկեղէն բնութիւն ունեցածի պէս իրենց անտերեւ ոստերը կը շարժէին եւ մօտաւոր ճախինններուն հետ անձայն կը խօսէին։ Աս երեւոյթներէն ետեւ յանկարծ ինքզինքս մերկ անապատի մը մէջ գտայ, ուր ոտքիս առջեւն ահագին առիւծ մը նստած էր, որն որ իր գիշատիչ ակռաները բացած, հրացայտ աչուըներն իմ վրաս տնկած՝ կը սպառնար զիս րոպէի մը մէջ լափելու։ Գազանն յանկարծ

քստմնելի մռնչիւն մ'արձակեց եւ կատաղութեամբ մը վրաս ցատքեց: Զարհուրանքէս եւ անձկութենէս յանկարծ արթնցայ եւ իմացայ որ տեսածս կատարեալ երազ չէր: Իրական գազանի մը թաթուլները կուրծքիս վրայ կը հանգչէին, իր հրային շունչն երեսս կը զարնէր. իր ճերմակ ակռաները մթութեան մէջ կը փայլէին:

Յայտնի կը զգայի որ իմ նիւթական եւ ոգեւոր զօրութիւնս սպառած, եւ մահացու թալուկ մը վրաս տիրած եւ իմ տեսնելու կարողութիւնս ան աստիճանի նուազած էր որ նոյն իսկ գազանին փայլուն աչուըները սկսան ինձի մթագոյն երեւալ: Վերջապէս անձկացած կուրծքէս տկար աղաղակ մ'արձակեցի. աս ձայնը կ'երեւայ թէ գազանին կատաղութիւնը գրգռեց, վասն զի շուտ մը բոլոր մարմնովը վրաս նետուեցաւ: Իմ զգացած զարհուրանքս կրնայ մտածուիլ. արդէն սկսած էի խորհիլ որ իր ահագին ակռաները կուրծքս պիտ'որ անցընէ, երբ որ անիկայ յանկարծ ուրախութեան ձայն մ'արձակեց եւ սկսաւ ձեռքս ու երեսս լզել:

Ինձի այսչափ ահ ու դող պատճառող գազանը Վագրն՝ իմ Նորֆունտլանցի հաւատարիմ շունս էր, զորն որ դեռ պզտիկ եղած ատենը տղու մը ձեռքէն ազատած էի, երբ որ անիկայ խեղճ անասնոյն վիզը քար մը կը կապէր որ ծով նետէ: Շունը նոյն ժամանակէն սկսեալ ամէն առթի մէջ ինձի մեծ հաւատարմութիւն կը ցուցընէր: Ուրախութենէս ինքզինքս կորսնցուցի երբ որ աս հեզ անասունը տեսայ, թէպէտ եւ ամենեւին չկրցայ ըմբռնել թէ ինչ կերպով անիկայ քովս եկած էր:

Ժամացոյցը դարձեալ ձեռքս առի եւ ականջիս բռնեցի եւ իմացայ որ նորէն կեցած էր, որն որ ինձի մեծ զարմանք մը չպատճառեց, վասն զի անդամներուս վրայ զգացած ծանրութենէն եւ իմ գտնուած վիճակէս դիւրաւ կրնայի մակաբերել

որ աս անգամ ալ շատ երկայն քնացած եմ։ Ցենդն անդամներս բոլորովին գրաւած էր, եւ ինծի կ'երեւար որ ծարաւէն պիտ'որ մեռնիմ։ Շօշափելով սափորս փնտռեցի, ճրագս սպառած էր եւ լուցափայտը չէի կրնար գտնել. վերջապէս սափորը ձեռքիս դպաւ, բայց զարհուրելով տեսայ որ բոլորովին պարպուած էր։ Անտարակոյս Վագրը ջրին մնացորդը խմած էր, ինչպէս որ մնացած ոչխարի խորվածին կտորն ալ լափած սպառած էր։ Այրուած միսը կորսնցընելս հոգս չէր, բայց ջուր չունենալս զիս բոլորովին վհատութեան մէջ ձգեց։ Արտաքոյ կարգի տկարացած էի. պզտիկ շարժում մ'ընելուս պէս բոլոր մարմինս տենդէ բռնուածի պէս կը դողար. վիճակս աւելի եւս գէշցաւ, երբ որ նաւն սկսաւ սաստիկ երերալ ու շարժիլ։ Եղի կարասներն աս շարժումէն սկսան տեղերնէն խախտիլ, կը վախնայի որ յանկարծ վար կ'իյնան եւ արկղէս դուրս ելլելու մի միայն ծակն ալ բոլորովին կը գոցեն։ Ծովի հիւանդութենէն ալ սաստիկ կը տանջուէի, ուստի վերջապէս որոշեցի որ բարեկամիս խցին ծակն երթամ եւ օգնութիւն մը գտնեմ, յայտնի տեսնելով որ քիչ մ'ետքն աս բանս ընելու կարողութիւն պիտ'որ չունենամ։ Բայց որովհետեւ ճրագս չկրցայ գտնել, մութի մէջ հոն երթալու փորձ ըրի, Վագրին հրամայեցի որ հանդարտ կենայ եւ ճամբորդութիւնս սկսայ։

Արդէն առաջին քայլին իմ վերջին աստիճանի տկարութիւնս յայտնի իմացայ. սաստիկ դժուարութեամբ կրնայի յառաջ երթալ, եւ շատ անգամ ոտուըներս ինծի իրենց ծառայութիւնը կը զլանային։ Ան ատեն կէս մարած գետինը կը փըռուէի եւ քանի մը բոպէ անզգայ կը մնայի։ Բայց շուտ մը նորէն ոտք կ'ելլէի։ Մտածելով որ զիս խցին առաջնորդող չուանը թող տալը կամ կորսնցընելը, կրնայ ան նեղ լաբիւրինթոսին մէջ

ինձի մահուան պատճառ ըլլալ, արտաքոյ կարգի ճիգ մ'ըրի որ յառաջ քալեմ։ Ցանկարծ գլուխս երկաթապատ արկեղ մը սուր անկիւնը զարնուեցաւ։ Քանի մը րոպէ թմրած մնացի, ետքը մեծ ցաւով տեսայ որ արկղը նաւին շարժումէն ըստ ամենայնի իմ ճամբուս վրայ գլտորած էր, եւ իմ յառաջ երթալս բոլորովին կ'արգելուր։ Բոլոր մնացած զօրութեամբս անոր կրթնեցայ, բայց եւ ոչ մատ մ'անդին կրցայ շարժել, վասն զի ուրիշ արկղներու մէջ մտած եւ սեղմուած էր։ Ինձի ուրիշ բան չմնաց բայց եթէ չուանը թողուլ եւ ուրիշ ճամբայ մը փնտռել, կամ արկեղ վրայ ելլել եւ այնպէս անոր միւս կողմն անցնիլ։ Առաջինն ի գործ դնելը շատ վտանգաւոր էր եւ միայն զանիկայ մտածելը վրաս սարսափ կը բերէր. իմ ունեցած մարմնոյ եւ ոգւոյ տկարութեամբս, այնպէս փորձ մ'անտարակոյս ան նեղ եւ խառնակ տեղւոյն մէջ ինձի աղէտալի մահուան պատճառ կ'ըլլար։ Ուստի բոլոր զօրութիւնս ժողվեցի, որպէս զի արկեղ վրան ելլելով միւս կողմն անցնիմ։ Բայց երբ որ աս որոշումն ի գործ դնելու սկսայ, տեսայ որ ասիկայ կարծածէս շատ աւելի դժուարին էր։ Նեղ ճամբուս երկու կողմը ծանր բեռներու կոյտ մը վրայէ վրայ դիզուած եւ բարձր պատեր ձեւացուցած էր. պզտիկ շարժում մը կրնար աս բեռները վար կործանել, եւ կամ անոնց տակ կը ճմլուէի, կամ ճամբաս անոնցմով կատարեալ գոցուելով ա՛լ ետ դառնալն եւ իմ արկեղս քովը հասնիլն անկարելի կ'ըլլար։ Իսկ ճամբուս վրայ ինկած արկղը սաստիկ բարձր էր. ամենեւին ոտքս դնելու տեղ մը չէի կրնար գտնել, ուստի երկայն ժամանակ պարապ տեղ աշխատեցայ անոր վրայ ելլելու։ Աս փորձը չյաջողեցաւ, բայց անտանելի աշխատութեամբ կարող եղայ իմ դանակիս օգնութեամբն ուրիշ արկեղ մը մէջէն ծակ մը բանալ եւ անկէ անցնելով մինչեւ խցին

դուռն հասնիլ։ Կը կարծէի որ զանիկայ դիւրութեամբ պիտ'որ բանամ, բայց բանը կարծածէս շատ տարբեր էր։ Բոլոր զօրութեամբս սկսայ դուռը դէպ ի վեր հրել, բայց օգուտ մը չըրաւ, դարձեալ փորձ մ'ըրի, բայց պարապ տեղ. յուսահատական կատաղութեամբ սկսայ անոր զարնել, եւ վերջապէս երբ՝ որ զօրութիւնս բոլորովին սպառեցաւ, ստիպուեցայ ըսել թէ իմ թաքուստս իմածուած՝ եւ նոյն ծակին դուռն զգուշութեամբ եւ ամուր գոցուած է։

Սրտս տիրած սարսափին ու վհատութիւնը բացատրելու բառ չեմ գտներ. պարապ տեղ աս գերեզմանին մէջ այսչափ երկայն թող տրուելուս պատճառը գտնելու կ'աշխատէի։ Ամենատխուր խորհուրդներ երեւակայութեանս առջեւը ներկայացան, եւ կը զգայի որ քաղցը, ծարաւն ու խեղդիչ օդը քիչ ժամանակէն կենացս վերջ պիտ' որ տային։ Մատովս դրան ճեղքերը փնտռեցի եւ փորձեցի որ արդեօք լուսոյ նշոյլ մը կրնա՞մ տեսնել, բայց անոր եւ ոչ փոքր նշմարանքը կը տեսնուէր։ Ան ատեն դանակս ճեղքէն ներս խօթեցի եւ անոր հանած ձայնէն իմացայ որ խցին մէջ ծանր շղթաններ գրուած են։ Ալ ուրիշ բան չէի կրնար ընել, բայց եթէ նորէն իմ տեղս դառնալ, եւ կա՛մ զիս տխուր բախտիս ձեռքը թողուլ, կամ ազատութեան ուրիշ հնարք մը մտածել։ Անտանելի դժուարութիւններէ ետքը տեղս հասայ, եւ երբ որ շնչասպառ, զօրութենէ ինկած՝ անկողնիս վրայ տարածուեցայ, Վագրն եկաւ քովս պառկեցաւ, իբրեւ թէ կ'ուզէր իր քծինքովը զիս մխիթարել ու քաջալերել։ Բայց աս անասնոյն ըրած արտաքոյ կարգի ձեւերն իմ մտադրութիւնս իր վրայ դարձընելու ստիպեցին. երբեմն երեսս ու ձեռուըներս կը լզէր. ետքը յանկարծ կը կենար եւ խորունկ ձայն մը կ'արձակէր. ձեռքս իրեն երկնցընելով իմացայ որ կռնա-

կի վրայ պառկած եւ թաթերը վեր վերցուցած էր։ Կարծեցի թէ մէկ կողմը վիրաւորուած է, բայց որչափ որ շօշափելով քննեցի, չկրցայ վէրքին տեղը գտնել. գուցէ անօթի է, ըսի, եւ կտոր մը միս տուի, զորն որ սիրով կերաւ, բայց ետքը նորէն նոյն ձեւերն ընելու սկսաւ։ Ան ատեն ձեռքովս իր մարմնոյն ամէն կողն աղէկ մը շօշափեցի, հաստատուն միտքս դնելով որ անասունը վէրք մ'ունի. եւ յանկարծ ձեռքս չուանի մը դպաւ որն որ անասնոյն մարմնոյն պլլուած, եւ ծայրը թղթի կտոր մը հաստատուած էր։

Անմիջապէս մտածեցի որ թուղթը խրկողն Ագոստն է, եւ թէ ինքը մտքէս չանցած պատճառաւ մ'արգելուած է զիս իմ բանտէս ազատելու, եւ ասոր համար աս միջոցը գտած է իրաց վիճակն ինձի ծանուցանելու։ Անհամբերութեամբ մը ճրագս ու լուցափայտս փնտռեցի. կը յիշէի որ վերջին անգամ քուն մտնելէս յառաջ զանոնք տեղ մը պահած էի, բայց տեղը միտքս չէր գար, եւ ան մթութեան մէջ զանոնք գտնելու համար ըրած ամէն ջանքս ու ճիգս պարապ եղաւ։ Աս միջոցիս յանկարծ աչքիս աղօտ լոյս մը դպաւ, որն որ ինձմէ քանի մը քայլ հեռու կ'երեւար, բայց շուտ մը նորէն կորսնցուցի. զանիկայ նորէն տեսնելու համար հարկ եղաւ շատ անգամ ասդին անդին դառնալ։ Երբ որ վերջապէս գտայ մեծ զգուշութեամբ, որպէս զի նորէն չկորսնցընեմ, աչուըներս վրան տնկած, անոր մօտեցայ եւ իմացայ որ լուցափայտիս լուսակրին մնացորդներէն յառաջ կու գար, որոնք անյատակ ու գետինը պառկած կարասի մը մէջ ասդին անդին ցրուած էին։ Մի եւ նոյն ժամանակ մեղրամոմներուս կտորուանքը ձեռքս դպան. անտարակոյս շունը զանոնք ծամած ու փշրած էր։ Խեղճ անասունն իր քաղցն անցընելու ուրիշ բան չգտնելով մոմերը լափած էր, եւ ես չէի գիտեր որ ինչ կեր-

պով բարեկամիս խրկած թուղթը կարդամ։ Եղած տեղս այնպէս մութ էր որ հազիւ ճերմակ թուղթը կը նշմարէի, եւ պարապ տեղ աս մթութեան մէջ լոյս մը գտնելու կ'աշխատէի։

Վերջապէս աս միջոցը գտայ. թուղթը գրքի մը վրայ տարածեցի, եւ անոր վրայ քանի մը լուցափայտի լուսակիր քսեցի. անկէ ետքը սկսայ թուղթը ձեռքովս շփել։ Շուտ մը պայծառ լոյս մը ծագեցաւ, բայց դժբախտութեամբ աչքիս միայն ճերմակ թուղթ մ'երեւցաւ, որուն վրայ ամենեւին բան մը գրուած չէր։ Դարձեալ առաջին անմխիթարութեան մէջ ընկղմեցայ։

Արդէն յիշած եմ որ իմ բանտիս մէջ երբեմն երբեմն ոգւոյ տկարութիւն եւ անհակառակելի քուն մը կը զգայի, որն որ անտարակոյս առած ապականեալ շնչիս եւ սաստիկ ծարաւիս հետեւութիւնն էր, վասն զի 14—15 ժամ էր որ կաթիլ մը ջուր բերանս դրած չէի. անկէ զատ կերածս միայն աղած եւ համեմած միս էր, վասն զի վիզս եւ բերանս ուռած ըլլալով՝ չէի կրնար կարծր պաքսիմատն ուտել։ Զօրութիւնս արտաքոյ կարգի պակսած էր, եւ սաստիկ տկարութիւն եւ անհանգստութիւն կը զգայի. ասով կրնայ մեկնուիլ թէ ինչու քանի մը ժամ միտքս ժողվելէն ետքը հազիւ կրցայ մտածել որ թղթին միւս կողմն ալ պէտք էր նայիլ. կատաղութենէս կ'ուզէի ինքզինքս զարնել թէ ինչու աս խորհուրդը ժամ մը յառաջ միտքս չեկաւ, վասն զի կոյր ու տղայական յուսահատութեամբ մը զանիկայ պատառ պատառ ըրած եւ մէկդի նետած էի։ Շանս սուր զգայութիւնը զիս աս վարանքէն ազատեց։ Երկայն փնտռելէն ետեւ պատռած թղթին մէկ կտորը գտած էի. ասիկայ շան առջեւը բըռնեցի, եւ մեծ ուրախութեամբ տեսայ որ անասունը միտքս իմացաւ. շուտ մ'ամէն կողմ որոնեց եւ նախ պզտիկ կտոր մ'եւ քիչ մ'ետքն ուրիշ

մեծ կտոր մը գտաւ ինծի բերաւ։ Երեք կտորն ալ իրարու քով աղէկ յարմարեցան. բարեբախտութեամբ դեռ քանի մը կտոր լուսակիր ունէի, ուստի նորէն առաջին գործողութիւնը կրկնեցի, նախ մատով շօշափելով՝ թղթին գրուած երեսն իմանալէն ետեւ։ Իմ անհամբերութեանս եւ տկար ու յանկարծական լուսոյն զօրութեամբն հազիւ կրցայ աս կարմիր թանաքով գրուած խօսքերը կարդալ "Արիւն, — աղէկ պահուըտէ, կեանքդ անկէ կախուած է„։ Զարհուրանքէս ինքզինքս կորսնցուցի։

"Արիւն„ ահագին ու զարհուրելի բառ մը, որն որ իմ խաւարին բանտիս մէջ աչքիս առջեւը սարսափելի երեւոյթ մը բացաւ, վրաս ահուդող մը բերաւ, եւ զօրութեանս մնացորդն ալ սպառելու կը սպառնար։ Անտարակոյս բարեկամս ծանր պատճառներ ունէր որ ինծի կը յանձնէր թաքըստեանս մէջ մնալ. բայց որչափ որ ինքզինքս նեղը խոթեցի եւ միտքս տանջեցի, չկրցայ իր ընթացքին՝ միտք համոզելու մեկնութիւն մը տալ։ Նորէն խցին դուռն երթալու եւ զանիկայ բանալու փորձ ընել, կամ կանչելով ու պոռալով իմ ուր ըլլալս նաւավարներուն ծանուցանել ալ եւ ոչ մտածելու բան էր. ուստի նորէն անկողնիս վրայ նետուեցայ եւ հոն գրեթէ 24 ժամ սառածի պէս մնացի։

Բայց մ'ետքը նորէն արթընցայ եւ սկսայ վիճակիս խեղճութեան վրայ մտածել. յայտնի կը տեսնէի որ հազիւ 24 ժամ ալ ծարաւին կարող պիտ'որ ըլլամ դիմանալ։ Աւգոստին քովս թող տուած ոգեւոր ըմպելիքները գրեթէ սպառած էի, բայց ասոնք փոխանակ ծարաւս անցընելու տաքութիւնս աւելի եւս սաստկացուցին։ Կերակուրս ալ հատնելու մօտ էր. հազիւ կտոր մ'ապուխտ ունէի. միւս մսի պաշարս եւ պաքսիմատները շունս լափած էր։ Գլխիս ցաւն ամէն բոպէ

կը սաստկանար եւ մեծ դժուարութեամբ գըլանուած տեղւոյս թանձր եւ խեղդիչ օդը կը շընչէի: Բայց ասոնցմէ շատ աւելի զիս անհանգիստ կ'ընէր շանս վարմունքը: Արդէն լուսակիրը թըղթին վրայ քսելով առժամանակեայ լոյս մը հանած ատենս իր մրմռալու ձայնը լսած էի, բայց նոյն պըլպըլութեան մէջ մեծ մտադրութիւն մ'ըրած չէի. քիչ մ'ետքն երբ որ կէս թմրած անկողնիս վրայ տարածուեցայ, արտաքոյ կարգի սուլելու եւ խոթդալու ձայն մը սկսայ լսել, եւ միտ դնելով իմացայ որ աս անսովոր ձայնը շնէն կու գար, որն որ սաստիկ պըլպըլած էր եւ իր աչուըները նոյն մթութեան մէջ սաստիկ կը փայլէր. մէկ կողմանէ ալ ակռաները կը կրճէր: Աս նշաններէն համոզուեցայ որ ջրի եւ մաքուր օդի պակսութիւնը զինքը կատղեցուցած է, եւ չէի գիտեր որ աս վտանգաւոր եւ անկողնէս դուրս ելլելու ծակին առջեւը պառկած անասնոյն ինչ ընեմ: Չէի կրնար ինքը զինքս որոշել որ զինքն սպաննեմ, թէպէտ եւ իմ անձիս ազատութեան ու պահպանութեան համար աս բանս հարկ էր ընել: Իր հրացայտ աչուըները միշտ վրաս ուղղուած էին եւ սպառնալից կերպարանք մ'ունէին ամէն րոպէ յարձակում մը կրելու վախ պէտք էի ունենալ: Վերջապէս զգացի որ ալ երկայն ատեն իմ արկեղս մէջ չեմ կրնար ապահովութեամբ մնալ, ուստի մեծ դանակ մը, մնացած ըմպելիքին շիշն եւ ապխտի կտորը ձեռքս առի եւ սկսայ արկղէն դուրս ելլել. բայց անասունը միտքս հասկըցաւ եւ սաստիկ հաջելով յանկարծ վրաս յարձակեցաւ: Իր մարմնոյն ծանրութիւնը զիս գետինը ձգեց. բայց բարեբախտութեամբ երեսի վրայ ինկայ եւ իյնալու ժամանակս կարող եղայ վերմակս վրաս քաշել. որն որ քիչ մը ժամանակ զիս շան ահագին խածուածներէն պաշտպանեց: Սակայն իր սաստիկ ակռաները վերմակին

անցընելը ու զանիկայ պատառ պատառ ընելը կը զգայի. այլ կռնակս պահպանութիւն չէր մնացած եւ կատաղած անասունն ամէն րոպէ կրնար իր ժանիքը մարմնոյս անցընել: Մահուան վախէն եւ յուսահատութենէն վրաս նոր զօրութիւն մ'եկաւ, եւ այնպիսի սաստկութեամբ մը վեր ցատքեցի որ շունը վրայէս մէկդի նետուեցաւ. անմիջապէս ոտք ելայ վերմակն անոր վրայ նետեցի եւ արկղէն դուրս անձապարելով՝ անոր ծածկը զօրաւոր գոցեցի, այնպէս որ ա՛լ անոր յարձակմանէն ապահով էի: Բայց աս գործողութեան մէջ ձեռքս գտնուած ապխտին կտորն արկեղ մէջ ինկաւ եւ քովս միայն կէս շիշ զօրաւոր ըմպելիք մը մնաց որն որ բոլոր պաշարս էր: Ասիկայ մինչեւ վերջին կաթիլը խմեցի ու կատաղութենէս շիշը գետինը զարնելով կտոր կտոր ըրի:

Նոյն րոպէն տկար ու կէս խղդուած ձայն մը լսեցի, որն որ նաւավարաց բնակարանին կողմանէ կու գար եւ իմ անունս կը կանչէր: Ասիկայ ինծի այնպէս անակնկալ բան մ'եկաւ եւ զիս այնչափ այլայլեց որ լեզուս բոլորովին բռնուեցաւ եւ բառ մը չկրցայ արտաբերել: Ամէն ճիգն ի գործ դնելով կարող չեղայ տկար ձայն մ'ալ հանել: Վախնալով որ բարեկամս զիս մեռած կը կարծէ եւ նորէն ետ կը դառնայ, արկեղս քովը կեցայ. բոլոր մարմինս կը դողար, բերանս բացուած՝ բառ մը հնչելու կը ճգնէր, բայց պարապ տեղ, վասն զի եւ ոչ փոքր ճիկ մը կրնայի հանել: Նոյն տեղը գտնուած զանազան բեռներուն մէջէն ձայն մը լսեցի, բայց ձայնն երթալով կը հեռանար, եւ գրեթէ բոլորովին կորսուելու մօտ էր: Չեմ կրնար իմ նոյն րոպէիս մէջ զգացած դառնութիւնս իմացընելու բառ գտնել: Անիկայ նորէն հեռացաւ, — անիկայ, իմ բարեկամս, իմ ընկերս, որմէ իրաւամբ կրնայի ու պէտք էի օգնութիւն յուսալ. — Նորէն հեռացաւ ու զիս թող տուաւ:

Ուրեմն կ'ուզէ որ ան խեղճ ողորմելի վիճակին մէջ մեռնիմ։ Մինակ մէկ բառ մը, մինակ վանկ մը կրնար զիս փրկել, եւ այս բառն, այս վանկը կարող չէի արտաբերել։ Նոյն ժամանակը կրածս մահուան տանջանքէ մ'աւելի էր։ Գլուխս սկսաւ դառնալ եւ կէս մարած գետինն ինկայ։

Ինկած ատենս, ձեռքս գտնուած մեծ դանակն ինծի մօտ եղող կարծր նիւթերու զարնուելով՝ հնչիւն մը հանեց. երբեք քաղցր գեղգեղանք մ'ականջիս այնպէս ախորժելի հնչած չէր, ինչպէս այս դանակին հանած ձայնը, եւ մեծ ակընկալութեամբ՝ ասոր Աւգոստին վրայ ըրած ազդեցութիւնը տեսնելու կը սպասէի։ Աւգոստին վրայ կ'ըսեմ, վասն զի հաստատութեամբ գիտէի որ անկէ զատ մէկն իմ անունս չէր կրնար կանչել։ Քանի մը րոպէ խոր լռութիւն մը տիրեց. վերջապէս անգամ մ'ալ Արթուր բառը լսեցի. այս բառը քանի մ'անգամ ցած ձայնով մը եւ անգամ մ'ալ յայտնի զարմացմամբ մը կրկնուեցաւ։ Նորէն արթնցած յոյսը լեզուս արձակեց, ու բարձրաձայն պոռացի, "Աւգոստ, ո՜ Աւգոստ,,։ "Աստուծոյ սիրոյն համար, լռէ լռէ,, պատասխանեց մեծ այլայլութեամբ, այս խառնակութեան մէջէն ճամբայ մը բանալու պէս, շուտ մը քովդ կու գամ։

Երկայն ատեն անոր շարժման ձայները լսեցի. ամէն րոպէն ինծի դար մը կու գար. վերջապէս իր ձեռքը կռնակիս վրայ զգացի, նոյն վայրկենին շիշ մը ջուր բերանս դրաւ։ Այս զովացուցիչ ըմպելիքին ինծի պատճառած բերկրութիւնը միայն անոնք կրնան ըմբռնել, որոնք որ իմ կրած ծարաւս կրած են. միայն անոնք կըրնան զգացած զուարճութիւնս իմանալ։ Ծարաւս քիչ մ'անցնելէն ետեւ Աւգոստ գրպանէն չորս հատ խաշած գետնախնձոր հանեց, զորոնք սաստիկ ախորժակով լափեցի. Նաեւ լապտերով մը

լոյս ալ բերած էր, աս կենդանարար ճառագայթին տեսիլն ինձի կերակրին եւ ջրին չափ սփոփանք պատճառեց: Ասկէ ետքը մեծ անհամբերութեամբ սկսայ նաւուն վրայ պատահածներն ու բարեկամիս այնչափ ժամանակ քովս չմօտենալուն պատճառն հարցընել:

Նաւն, ինչպէս որ ճիշդ մակաբերած էի, Աւգոստին ժամացոյցն ինձի թող տալէն ժամ մ՚ետքը ճամբայ ելած էր. մինչեւ նոյն ժամանակն արդէն երեք օր էր որ ես իմ խաւարին բնակարանս մտած էի, աս երեք օրերը նաւին մէջ այնչափ շատ գործք կար որ բարեկամս չէր կրնար առանց իմ թաքուստս իմացուելու քովս գալ: Երբ որ վերջապէս առիթ մը գտած էր, ինձմէ իմ ողջ առողջ ըլլալս տեղեկացաւ, ուստի հետեւեալ երեք օրերը վրաս հոգ չէր ըրած. ի վերայ այսր ամենայնի միշտ նոր առիթ մը փնտռած էր դարձեալ քովս գալու, եւ հազիւ չորրորդ օրը կարող եղած էր յաջողցընել: Աս միջոցիս շատ անգամ սկսած էր Բեռնարդ նաւապետին հեռուանց ամէն բան իմացընել, որպէս զի զիս իմ թաքստոցէս հանէ, բայց դեռ Նանդուգէդին շատ մօտ էինք, եւ բարեկամս նաւապետին խօսքերէն յայտնի իմացած էր որ եթէ իմ նաւին մէջը գտնուիլս յայտնուելու ըլլայ, անիկայ նաւը ցամաք պիտ՚որ մօտեցընէ եւ զիս դուրս պիտ՚որ հանէ: Աս պարագան մտածելով եւ միանգամայն գիտնալով որ նոյն ժամանակը բանի մը հարկաւորութիւն չունիմ, եւ եթէ բան մը պակսելու ըլլայ՝ կրնամ իր խուցը գալ եւ իրեն ծանուցանել, քովս գալն աւելի յարմար ժամանակի մը կը թողու: Հազիւ իր վերջին տեսութեան չորրորդ օրը կարող կ՚ըլլայ աս բանս կատարել. բայց հետը ոչ ջուր եւ ոչ կերակուր կը բերէ. որովհետեւ կ՚ուզէր զիս իր խուցը կանչել եւ հոն ամէն հարկաւոր բաները տալ: Բայց իր եկած ատենն ես խորունկ քուն

մտած էի եւ բարձրաձայն կը խորհդայի. աս քունն ըստ իմ հաշուիս երեք անգամ 24 ժամ տեւած պիտ՚որ ըլլայ, որուն պատճառը տեղւոյն թանձր օդէն զատ, հոն գտնուող ձկան ճարպին հոտն էր։ Աւգոստ նախ ցած ձայնով քանի մ՚անգամ զիս կը կանչէ, եւ երբ որ պատասխան չառնուր խցին դուռը գոցելով աւելի զօրաւոր ձայն կու տայ, բայց դարձեալ պատասխան տուող չըլլար։ Ասոր վրայ տարակուսի մէջ կ՚իյնայ. ան խառնակութեան մէջէն անցնելով մինչեւ քովս հասնելու շատ ժամանակ հարկաւոր էր, եւ նոյն միջոցին կրնար նաւապետը զինքը կանչել, վասն զի ամէն րոպէ գրել տալու հարկաւորութիւն ունէր, որն որ Աւգոստին պաշտօնն էր։ Խորհդալուս ձայնէն համոզուելով որ քնոյ մէջ եմ, կ՚որոշէ նորէն ետ դառնալ եւ ուրիշ աւելի յարմար ժամանակ մը քովս գալու փորձ փորձել։ Աս մտածման մէջ եղած ատեն ականջն անսովոր ձայն մը կու գայ, շուտ մը ծակին դռնէն վեր կ՚ելլէ, զանիկայ զգուշութեամբ կը գոցէ, եւ հազիւ թէ խցին դուռը կը բանայ, դիմացէն իր վրայ ատըրճանակ մը կը պարպուի եւ ձեռքի հարուած մը զինքը գետինը կը ձգէ, ու զօրաւոր բազուկ մը զինքն այնպէս կը բռնէ որ տեղէն չիկրնար շարժիլ. բայց կարող կ՚ըլլայ ամէն իր մօտն եղածները տեսնել։

Իր հայրը ձեռուըներն ու ոտուըները կապուած եւ գլխիվայր սանդուխի մը վրայ հաստատուած էր. ճակատին վրայ մեծ վէրք մ՚ունէր, ուսկից արիւնն հեղեղի պէս կը վազէր. ամենեւին ձայն չէր հաներ ու մահուան մօտ կ՚երեւար։ Իր քովը կեցած էր նաւուն նաւազապետն եւ դիւական հանդարտութեամբ մ՚անոր գրպանը կը փնտռէր եւ գտած բաները կը յափշտակէր։ Նաւաստիներէն եօթը հոգի՝ որոնց մէջ խոհակերութեան պաշտօն վարող սեւամորթ մ՚ալ կար, պաշտօնակալաց

խցերուն մէջ զէնք կը փնտռէին, եւ շուտով անոնցմէ մեծ բազմութիւն մը ձեռք ձգեցին: Անկէ ետքն աւազակները նաւուն ծածկն ելան, եւ զԱւգոստ ալ, որուն ձեռուըներն ետեւէն կապած էին, իրենց հետ հոն տարին. հոն ճամբորդաց բնակարանին սանդուխին գլուխը կեցան, ամենուն ձեռքը մէյմէկ տապար, եւ վար պոռացին: "Է՛ վարը գտնուողներ, ամէնքնիդ ալ շուտով մէկիկ մէկիկ վեր պէտք էք գալ, լսեցի՞ք": Երկայն ատեն եւ ոչ մէկն համարձակեցաւ վեր գալ. վերջապէս անգղիացի մ'երեւցաւ, որն որ իբրեւ աշակերտ նաւ մտած էր, խեղճը դառնապէս կու լար ու նաւապետին կ'աղաչէր որ իր կենացը խնայէ: Ասոր պատասխանն իր գլխին տապարի հարուած մ'եղաւ: Առանց ճիկ մը հանելու թշուառ պատանին գետինը տապալեցաւ. խոհակերը զինքը պզտիկ տղու մը պէս բռնեց վեր վերցուց եւ ծովուն ալիքներուն մէջ նետեց: Վարը գտնուող ճամբորդները հարուածին եւ պատանւոյն իյնալուն ձայնը յայտնի լսեցին, եւ ա՛լ եւ ոչ մէկը կ'ուզէր ծածկին վրայ ելլել: Երբ որ ամէն խոստում ու սպառնալիք օգուտ մը չըրաւ, ապստամբ նաւաստիներէն մէկն առաջարկեց որ զանոնք մխով իրենց տեղէն ելլելու ստիպեն: Ան ատեն վարը գտնուողներն սկսան միաբան վեր վազել, եւ այնպէս կ'երեւար որ նաւը նորէն հաւատարիմ մարդիկներու ձեռք պիտ'որ անցնի:

Սակայն ապստամբներն աճապարեցին ու սանդուխին դուռը գոցեցին, եւ հազիւ 6 հոգի կարող եղան նաւուն ծածկն ելլել. ասոնք իրենց քիչուորութեան եւ զէնք չունենալնուն պատճառաւ, չէին կրնար ապստամբաց դէմ դնել. նաեւ նաւազապետն իրենց մեծամեծ խոստումներ ըրաւ եւ քաղցրութեամբ խօսելով ապահովցուց որ ամենեւին իրենց վնաս մը չընէր, անտարակոյս ներսինները խաբելու եւ իրենց թաքստոցէն դուրս

հանելու համար, որն որ իրօք ալ յաջողեցաւ։ Վասն զի ներսը մնացողները ձայն տուին թէ ամէնքն դէմ դնելու փորձ չեն ըներ, այլ կ'ուզեն անձնատուր ըլլալ ու հնազանդիլ։ Մէկիկ մէկիկ սկսան վեր ելլել, բայց ապստամբք, ինչպէս առաջին 6 ելլողներուն ըրած էին, անոնց ձեռուըները կը կապէին ու գետինը կը նետէին. այսպէսով 27 հոգի՝ որոնք ապստամբութեան մասնակից չէին եղած՝ նուաճուեցան։ Անկէ ետքը զարհուրելի տեսարան մը սկսաւ։ Կապուած նաւորդները նաւին ծայրը տարուեցան, հոն սեւ խոհակերը տապարով մէկիկ մէկիկ անոնց գլուխները ճեղքեց եւ կիսամեռ ծով նետեց։ Աս կերպով 22 հոգի սպաննուեցան։ Աւգոստ ալ ինքը զինքը կորսուած կը համարէր, եւ ամէն րոպէ կը սպասէր որ կարգն իրեն պիտ'որ գայ. բայց չարագործները կամ յոգնելով եւ կամ ըրած ջարդերնին՝ բաւական համարելով՝ բարեկամէս զատ չորս հոգւոյ ալ խնայեցին։ Նոյն ժամանակը նաւազապետը կարաս մը շաքարօղի վեր բերել տուաւ եւ ապստամբ նաւաստիք սկսան կերուխում մ'ընել որն որ մինչեւ արեւուն մտնելը տեւեց։ Ազէկ մը գլուխնին տաքնալէն ետեւ մտադրութիւննին նորէն իրենց մօտ պառկող կալանաւորներուն վրայ դարձուցին, որոնք իրենց ամէն խօսքերը յայտնի կը լսէին։ Կ'երեւայ թէ չարագործներէն մէկքանին ըմպելիքը չափէն աւելի խմելով՝ քիչ մը մեղմացած էին. ասոնք կ'ըսէին թէ մնացած կալանաւորներն ազատ թող տալու է եթէ յանձն առնուն ապստամբութեան մասնակից ըլլալ։ Բայց սեւ խոհակերն՝ որն որ ստոյգ դեւ մըն էր եւ նաւուն մէջ նաւազապետին չափ ազդեցութիւն ունէր, այսպիսի առաջարկութիւն մը եւ ոչ ուզեց լսել, այլ տապար մ'առած ոտք ելաւ որ իր դահճի պաշտօնը յառաջ տանի։ Բարեբախտութեամբ այնչափ արբած էր որ հազիւ ոտ-

քի վրայ կրնար կենալ, եւ այսպէս Տիրք Բեդերս անուամբ նաւաստին զինքը կարող եղաւ դիւրաւ արգելուլ: Աս Տիրք Բեդերս նաւավարը Հնդիկ կնոջ մ'որդի էր, Ուքսարոգաս ըսուած ցեղէն՝ որն որ Միսուրի գետին բղխած տեղերը կը բնակի: Իր հայրը մուշտակի վաճառական էր եւ Հնդկաց ամէն վաճառատեղիները պտըտած էր: Իսկ ինքը Բեդերս այնպիսի վայրենի տեսք մ'ունէր որ իրեն նման մարդ մ'ամենեւին տեսած չէի: Հասակն եւ ոչ հինգ ոտնաչափ կար, բայց արտաքոյ կարգի հուժկու եւ զօրաւոր էր. գլխաւորաբար ձեռուըներն այնչափ մեծ էին որ մարդու ձեռք ըլլալնին ամենեւին չէր իմացուեր. թաղուկներն եւ ազդրները զարմանալի ձեւով մը ծռած էին: Նաեւ իր գլուխը արտաքոյ կարգի տգեղ ձեւ մ'ունէր, սաստիկ հաստ եւ գրեթէ բոլորովին լերկ էր, ասոր համար ալ միշտ կեղծամ մը կը կրէր, որն որ հասարակօրէն անասնոյ մը, շատ անգամ շան եւ արջու մորթի կտորէ մը շինուած էր. ասով իր դէմքին վայրենութիւնն աւելի եւս կը սաստկանար: Բերանն այնչափ մեծ էր որ գրեթէ երկու ականջներուն կը դպչէր. բայց ասոր հակառակ շրթունքը սաստիկ բարակ ու նեղ էին, եւ չէին կրնար իր բրչաձեւ ակռաները ծածկել: Իր ուժին ու զօրութեան, եւ իր կատաղութեան վրայ Նանդուգեդի նաւաստիք զարմանալի պատմութիւններ կը պատմէին: Բայց ‘‘Կրամփուսին,, մէջ շատ անգամ իրեն հետ կատակ կ'ընէին: Աս մարդուն այսչափ մանրամասն ստորագրութիւնն ընելս անոր համար է որ ինքը թէպէտ եւ արտաքուստ այնպէս վայրենի երեւոյթ ունէր, իմ բարեկամիս ազատութեան պատճառ եղաւ, եւ աս պատմութեան ընթացքին մէջ շատ անգամ առիթ պիտ'որ ունենամ իր ըրածներն յիշելու:

Երկայն կռուէ ու վէճերէ ետքը վերջապէս ապստամբք միաբանեցան որ մնացած կալանաւոր-

ները մակոյկի մը մէջ իջեցընեն եւ բաղդին թող տան. միայն Աւգոստ աս կարգադրութենէ դուրս պիտ'որ մնար, վասն զի Բեդերս իր ընկերներուն ծանոյց որ կ'ուզէ զանիկայ իբրեւ իր քարտուղարը գործածել։ Աս որոշման վրայ նաւազապետը վարի խցերն իջաւ որպէս զի տեսնէ թէ արդեօք Բեռնարդ նաւապետը դեռ ողջ է թէ չէ։ Շուտ մ'երկուքը մէկտեղ վեր եկան. Նաւապետը մեռելի գոյն մ'ունէր, բայց քիչ մը զօրութիւն առած էր։ Տկար ձայնով մ'ապստամբաց հետ սկսաւ խօսիլ եւ աղաչեց որ զինքը պզտիկ մակոյկի մը մէջ հովին եւ ալեաց բռնութեան չմատնեն, այլ իրենց ապստամբութիւնը մէկդի թողուն. Ես անցածը կը մոռնամ, կ'ըսէր, զձեզ մօտաւոր տեղ մը ցամաք կը հանեմ եւ զձեզ ամենեւին դատաստանի չեմ մատներ։ Կրնար աս խօսքերը հովին ալ զրուցել։ Ոճրագործներէն երկուքն իր թեւերէն բռնեցին ու պզտիկ նաւակին մէջ նետեցին՝ որն որ արդէն ծով ձգուած էր։ Նաւուն վրայ գտնուող չորս կապեաններուն ալ կապերը քակեցին եւ հրամայեցին որ անյապաղ նաւակն իջնան, զորն որ անոնք առանց ընդդիմութեան եւ առանց բառ մը խօսելու ի գործ դրին։ Աւգոստ դեռ իր խեղճ վիճակին մէջ մնաց. Թէպէտ եւ սաստիկ կ'աղաչէր որ վերջին անգամ մ'ալ հօրը փաթթուելու թող տան, բայց մտիկ ընող չկար։ Մակոյկը դրուած դժբախտներուն քանի մը նաւու պաքսիմատ եւ սափոր մը ջուր նետեցին, սակայն ոչ կայմ, ոչ թիակ եւ ոչ ալ առագաստ մը տուին, եւ այնպէս զիրենք իրենց բախտին թող տուին։ Աս միջոցին գիշերը վրայ հասաւ. ամպապատ երկնից վրայ ոչ լուսին եւ ոչ պզտիկ աստղ մը կը տեսնուէր. Թէպէտ եւ հովը սաստիկ չէր, սակայն ծովուն ալիքները մեծ շարժման մէջ էին. Նաւակը քանի մը րոպէ ետքն ալ չէր տեսնուեր։ Թէպէտ եւ աս տառապեալոց ա-

զատութեան շատ քիչ յոյս կրնար ըլլալ, սակայն Աւգոստ ան յուսով ինք զինքը կը մխիթարէր որ գուցէ հովն եւ ալիքները զմակոյկը դէպ ի ցամաք կը տանին, եւ կամ նաւ մը ժամանակին զիրենք կը տեսնէ ու կ'ազատէ։

Ասկէ ետքն ամէն առագաստները պարզեցին եւ նաւն սկսաւ դէպ ի արեւմտեան հարաւ յառաջ երթալ. ապստամբաց միտքը ծովահէնութիւն ընել էր, եւ որչափ որ Աւգոստ իրենց խօսքերէն իմացաւ, կ'ուզէին Բորդոյ Ռիքոյէն գացող նաւու մը վրայ յարձակիլ ու կողոպտել։ Ալ Աւգոստին վրայ մտադրութիւն ընող չկար. իր կապերը քակուեցան եւ սկսաւ նաւուն մէջ ազատ պտըտիլ։ Մանաւանդ թէ Տիրք Բեդերս իրեն մասնաւոր սէր մը կը ցուցընէր, եւ իրեն հետ առանձին ընտանութեամբ մը՝ որչափ որ իր վայրենութիւնը թող կու տար, կը վարուէր։ Նաեւ քանի մ'առթի մէջ զինքը խոհակերին կատաղութեան դէմ պաշտպանած էր։ Ի վերայ այսր ամենայնի իր վիճակը միշտ վտանգաւոր ու դժուարին էր. ապստամբք գրեթէ շարունակ արբած էին, եւ իրենց բարի դիտաւորութեան վրայ ամենեւին չէր կրնար վստահուիլ։ Բայց այս վիճակի մէջ ըլլալով ալ բարեկամս զիս երբեք մտքէն հանած չէր, այլ միշտ առիթ մը կը փնտռէր քովս գալու. քանի մ'անգամ ալ ուզած էր իմ պահուած ըլլալս յայտնել որ զիս գոնէ ծարաւէն մեռնելէն ազատէ։ Վերջապէս ապստամբութեան երրորդ օրն երբ որ սաստիկ հովի մը պատճառաւ նաւավարք առագաստները վար առնելու զբաղած էին, Աւգոստ կարող կ'ըլլայ առանց իմացուելու իր խուցն երթալ, բայց մեծ ցաւով կը տեսնէ որ խռովարարք զանիկայ ամէն տեսակ բեռերով լեցուցած էին. Նաեւ նաւուն վրայ գտնուած մեծ շղթան հոն բերած եւ ըստ ամենայնի ան տեղւոյն վրայ դրած էին, ուր որ ինձի գալու

ծակին դուռը կը գտնուէր. բարեկամիս զօրու-
թիւնն աս արգելքը վերցնելու չէր բաւեր, ուս-
տի յուսահատած նորէն ետ կը դառնայ ու նա-
ւուն ծածկը կ'ելլէ: Հոն խափշիկ խոհակերը զինքը
կը դիմաւորէ, գօտիէն կը բռնէ, ու կը հարցնէ
թէ խցին մէջ ի՞նչ ըրաւ, եւ կ'ուզէր զինքը ծով
նետել. բայց Տիրք Բեդերս վրայ կը հասնի աս
անգամ ալ իր կեանքը կ'ազատէ: Սակայն խռո-
վարարք իր ձեռուըներն ու ոտուըները կը կապեն
եւ կը տանին նաւավարաց բնակարանը պատին վրայ
հաստատուած անկողնոյ մը մէջ կը դնեն, հրա-
մայելով որ անկէ չշարժի մինչեւ որ նաւը նաւ-
ըլլալէն չդադրի: Տիրք Բեդերսին աս բանս ար-
գելելու համար ըրած ամէն ջանքն անօգուտ կ'ըլլայ:

Երբ որ խոհակերն ահագին սպառնալիքներով
Աւգոստին քովէն կը հեռանայ, բարեկամս չէր
գիտեր ինչ ընէ, եւ դարձեալ միտքը կը դնէ որ
իմ ծածկուած ըլլալս յայտնէ, վասն զի ստոյգ
կը համարէր որ ես ծարաւին հազիւ մէկ երկու
օր ալ կրնամ դիմանալ: Բայց յանկարծ միտքն
ուրիշ խորհուրդ մը կու գայ, այսինքն յոյս կ'ու-
նենայ որ գուցէ կարելի է իմ քովս գալու ու-
րիշ ճամբայ մը գտնել, որովհետեւ իր գըտ-
նուած տեղը նաւին մթերանոցին քովն էր: Ամէն
բանէ յառաջ կը փորձէ ձեռուըները շղթայէն ա-
զատել, որն որ առանց մեծ դժուարութեան կը
յաջողի, վասն զի հաստ բազուկներու համար
շինուած էր, իսկ իրենները բարակ ու նիհար էին.
աջ ձեռքը շուտով կ'ազատէ, անով կարող կ'ըլլայ
միւս ձեռքն եւ ոտքին կապն ալ քակել. փոր-
ձելով կը տեսնէ որ խցին պատէն տախտակ մը հա-
նելն եւ ան ծակէն ինձի գալը շատ դժուար պիտ'
որ չըլլայ: Դեռ աս գործքին զբաղած ժամանակը
մարդու մ'ոտնաձայն կը լսէ եւ հազիւ կարող կ'ըլլայ
աճապարել ու շղթան նորէն ձեռուըներուն անցընել:
Եկողը Տիրք Բեդերսն էր որուն ետեւէն Վագրն

ալ կու գար. Ուգոստ աս անասունն իմ Նաւմոնելէս ետքը ներս առած էր, որպէս զի ինձի յանկարծական ուրախութիւն մը պատճառէ. ապըստամբութեան ելլելէն վեր խեղճ շունը տեղ մը փակուած կը կենար, մինչեւ որ Թեդերս զինքն ազատեց ու բարեկամիս քովը բերաւ: Վայրենի Նաւավարն աս իրիկուն արտաքոյ կարգի բարեկամական վարմունք մը կը ցուցընէր: Ուգոստին համար աղած մսի կտոր մը, գետնախնձոր եւ սափոր մը ջուր բերած էր, եւ խոստացաւ որ երկրորդ օրն աւելի աղէկ կերակուր կը բերէ: Հազիւ թէ Նաւավարն անկէ հեռացաւ, Ուգոստ քովն ունեցած կտրոցովը ղորն որ բարեբախտութեամբ ապստամբք իրմէ առած չէին, սկսաւ տախտակն հանելու աշխատիլ. բոլոր գիշերը կրնար հանգիստ իր գործքն յառաջ տանիլ, վասն զի Նաւավարք իրենց առաջին բնակարանն ամենեւին ոտք չէին կոխեր, այլ պաշտօնակալաց խուցն իրենք զիրենք կերուխումի եւ ուրախութեան տուած էին, եւ հազիւ վերջին հարկաւորութեան ատեն առագաստներն ու ղէկը կը հոգային:

Առտու ըլլալուն պէս տախտակը կը քակուի եւ բարեկամիս անկողնին ըստ ամենայնի քովը ծակ մը կը բացուի, այնպէս որ անկողինը զինք կրնար ծածկել եւ դրսէն ամենեւին չէր երեւար: Ուգոստ ծակէն ներս կը մտնէ, որուն ետեւէն շունն ալ կու գայ եւ քիչ մ'ատեն ասդին անդին հոտուըտալէն ետեւ՝ երկայն հաջելու ձայն մը կ'արձակէ: Նոյն ժամանակը բարեկամիս միտքը կ'իյնայ որ կրնայ շունն իբրեւ թղթատար գործածել. շուտ մը մատին ծայրը քիչ մը կը ծակէ. փայտի կտոր մը գրչի պէս կը կտրէ եւ Նաւավարի մը դարանին մէջ գտած թղթի կտորին վրայ մատէն ելած արիւնով հետեւեալ խօսքը կը գրէ. “Աս թուղթս իմ արիւնովս կը գրեմ աղէկ պահուէ, կեանքդ անկէ կախուած է,,: Թուղթը շան

վրայ կապելէն ետքը թող կու տայ որ զիս փնտռէ, եւ ինքն իր տեղը կը դառնայ, ծակը նորէն կը գոցէ, եւ ամենեւին իր անկէ հեռացած ըլլալը չիմացուիր։ Քիչ մ'ետքը թէ Բեդերս եւ թէ միւս նաւավարք իր քովը կամ թէ ճիշդ խօսելու համար իր գտնուած տեղը կու գան, վասն զի ամենեւին իր վրայ մտադրութիւն ընող չկար։ Ամէնն ալ վերջին աստիճանի արբած էին եւ համարձակ կը խօսէին թէ իրենցմէ մէկ մասը նաւազապետին առաջնորդութեամբ Հնդկաստանի կողմերը պիտ'որ երթայ եւ հոն ծովահէնութիւն պիտ'որ ընէ, իսկ միւս մասն՝ որն որ մինչեւ նոյն ժամանակ նաւուն մէջ տիրող էր, Տիրգ Բեդերսին խորհրդովը հարաւային ծովը նաւարկելով՝ կիտորսութիւն պիտ'որ ընէր, եւ կամ ուրիշ գործքի մը ձեռք պիտ'որ զարնէր։

Պլիշերն Աւգոստ դարձեալ առանձին մնացած էր. ուստի դարձեալ իր շղթաները կը հանէ, եւ նորէն ինձի գալու փորձ մը կ'ընէ։ Խցին մէջ գտնուած պարապ շիշ մը ջրով կը լեցընէ քանի մը գետնախնձոր գրպանը կը դնէ. լապտերի մը մէջ ճրագի կտոր մը մնացած էր, զանիկայ կը վառէ եւ ծակէն անցնելով իր անկողնոյն այնպէս կը գոցէ որ դրսէն չերեւայ, եւ կը սկսի դէպ իմ կողմս գալ։ Իր առջեւն ելած բեռներուն եւ արկղներուն խառնակութեան մէջէն հազիւ մեծ դըժարութեամբ կարող կ'ըլլայ յառաջ երթալ. արդէն քանի մը րոպէ ետքը տեղւոյն ապականեալ օդը զինքը նեղելու սկսած էր, որով իմ դեռ ողջ ըլլալուս վրայ բոլորովին յոյսը կտրած էր։ Քանի մ'անգամ զիս անունովս կը կանչէ բայց պատասխան չառնելով՝ իր կարծիքին վրայ աւելի եւս կը հաստատուի։ Եւ որովհետեւ ծովը սաստիկ ալեկոծեալ ըլլալով՝ նաւուն մթերանոցին մէջ մեծ դղրդիւն մը կը հանէր, կարելի չէր որ իմ շունչ առնելուս կամ խորդալուս ձայնը լսէր։

Արկեղս քովը հասնելու ամէն փորձ ընելէն ետեւ վերջապէս այնպէս տեղ մը կը հասնի որ ամէն կողմ գոցուած էր եւ ճամբայ մը գտնելը կարելի չէր. հոս բոլորովին վհատած յուսահատութեամբ ինք զինքը գետինը կը նետէ եւ կը սկսի տղու պէս լալ: Նոյն ժամանակս շիշի մը կոտրուելուն ձայնը կը լսէ. աս ըստ ինքեան աննշանակ բանն իմ կեանքս ազատեց, որովհետեւ բարեկամս զիս արդէն մեռած կարծելով՝ կը խորհէր նորէն ետ դառնալ:

Թէպէտ եւ Աւգոստ կատարեալ ստոյգ չէր որ նոյն ձայնն հանողն ես եմ, սակայն կը քաջալերուի իր գործքն յառաջ տանելու. նորէն իմ անունս կը կանչէ, բայց ես պատասխան տալու կարողութիւն չունէի. լեզուս բոլորովին բռնուած էր: Դարձեալ կը համոզուի որ ես կենդանի չեմ, ու կ'ուզէ ետ դառնալ, նոյն ժամանակը դանակին իյնալուն ձայնը կ'առնու, որուն վրայ յոյսը նորէն կ'արթարթի եւ անգամ մ'ալ բարձրաձայն զիս կը կանչէ: Աս անգամ լեզուս բացուած էր, ուստի կարող եղայ պատասխան տալ. իմ դեռ ապրելուս վրայ սաստիկ ուրախացած, դարձեալ սաստիկ ճիգ մ'ըրաւ ու կարասներուն եւ արկղներուն վրայէն անցնելով վերջապէս քովս հասաւ ու բոլորովին զօրութիւնն սպառած առջեւս գետինն ինկաւ:

Աս դէպքերն Աւգոստ միայն համառօտիւ ինձի պատմած էր, որուն մանրամասն պարագաներն ետքէն իմացայ: Կը վախնար որ իր հեռաւորութիւնը կ'իմացուի, իսկ ես ա'լ չէի կրնար երկայն ատեն ան ահագին բանտին մէջ մնալ: Ուստի որոշեցինք որ դէպ ի նաւավարաց խցին ծակը ճամբայ ելլենք եւ ես անոր մօտ կենամ մինչեւ որ դուրս ելլելու յարմար ատենը հասնի: Շունն ալ չուզեցինք հոն թողուլ. աս բանս մեզի մեծ անգթութիւն երեւցաւ: Բայց խնդիրը դիւրաւ որու-

չելու բան չէր։ Անասունը բոլորովին հանդարտ կ՚երեւար. ականջս արկեղ վրայ դրի եւ ամենեւին անոր շունչ առնելու ձայնը չէի լսեր. Հաստատուն համարելով որ արդէն մեռած է, արկղը բացի։ Բոլոր երկայնութեամբը տարածուած պառկած ու կատարեալ թմրած էր. բայց դեռ կ՚ապրէր։ Թէպէտ եւ կորսնցընելու ժամանակ չունէինք, սակայն չէի կրնար ինք զինքս որոշել որ շունն՝ որն որ երկու անգամ իմ կեանքս ազատած էր, առանց ազատելու փորձ մ՚ընելու իր բախտին թող տամ։ Վերջապէս սաստիկ դժուարութեամբ զինքն հետերնիս առինք. Աւգոստ ստիպուեցաւ աս մեծ եւ ծանրամարմին շունը գիրկն առած՝ ճամբաներնուս վրայ գտնուող արկղներուն եւ կարասներուն վրայ ելլել եւ այնպէս միւս կողմն անցնիլ, որուն սաստիկ զօրութիւն մը հարկաւոր էր. իմ նոյն ժամանակն ունեցած տկարութիւնս թող չէր տար որ ես ալ աս բանիս քիչ մ՚օգնեմ։

Աս կերպով վերջապէս ծակին քովն հասանք. Նախ Աւգոստ անկէ դուրս ելաւ, շունն ալ իր ետեւէն գնաց։ Մինչեւ աս ժամանակս բաներնիս շատ յաջող յառաջ կ՚երթար, որուն համար ջերմ աղօթքով Աստուծոյ շնորհակալ եղանք։ Մէջերնիս խօսելով պատշաճ համարեցանք որ ես ծակին մօտ կենամ, ուսկից բարեկամս կրնար դիւրաւ իր կերակրոյն մէկ մասն ինձի տալ, եւ կրնայի նոյն տեղն աւելի մաքուր օդ մը շնչել։ Հազիւ թէ Աւգոստ իր անկողնին մէջ մտած եւ ձեւուըները շղթային անցուցած էր, արեգակը ծագեցաւ եւ իր ճառագայթներովը նաեւ անոր բնակարանը լուսաւորեց։ Մեծ վտանգէ մ՚ազատած էինք, վասն զի հազիւ թէ բարեկամս ամէն բան իր առաջին կարգին մէջ խոթեց, նաւապետը Տիրգ Բեդերսին եւ խոհակերին հետ վար իջաւ, եւ սկսան մէջերնին գալու նաւուն վրայ

խօսիլ, զորն որ պիտ՚որ կողոպտէին։ Խոհակերն Աւգոստին անկողնոյն գլխի կողմը նստաւ. ես իմ պահուըտած տեղէս ամէն բան կրնայի լսել, վասն զի ծակին տախտակը նորէն իր տեղն հաստատուած չէր, այլ միայն անոր առջեւը շապիկ մը կախուած էր. խափշիկը կրնար ամէն րոպէ աս բանս դիտել եւ ան ատեն երկուքնիս ալ անշուշտ կորսուած էինք։ Բոլոր աս ժամանակս վագրն անկողնին ոտքին կողմը նստած էր եւ կ՚երեւար թէ կամաց կամաց կ՚առողջանայ։

Նաւազապետն ու խոհակերը քիչ մ՚ետքը գացին եւ միայն Տիրգ Բեդերս բարեկամիս քովը մնաց, եւ խափշիկին նստած տեղը նստելով՝ սկըսաւ մեծ ընտանութեամբ խօսիլ։ Ան ատեն իմացանք որ իր գինովութիւնն՝ որն որ միւս երկուքին իր քովը գտնուած ժամանակը վերջին աստիճանի հասած կ՚երեւար, ըստ մեծի մասին շինծու եւ ձեւացուցած էր։ Աւգոստին ամէն հարցումներուն դիւրաւ կը պատասխանէր, եւ զինքը կ՚ապահովացընէր որ հայրն ստուգիւ ազատած է, վասն զի կ՚ըսէր անոնց ծով ձգուելէն քիչ մ՚ետքը հինգ նաւ երեւցաւ որոնցմէ մէկն անտարակոյս մակոյկը տեսած եւ օգնութեան հասած է։ Իր խօսակցութեան կերպը շատ քաջալերիչ ու մխիթարական էր, որն որ ինծի մեծ զարմանք եւ միանգամայն մեծ ուրախութիւն ալ պատճառեց։ Սկսայ յուսալ որ Տիրգ Բեդերս մեզի աղէկ գործիք մը կրնայ ըլլալ, որուն ձեռքովը կրնանք նաւը մեր իշխանութեան տակ առնուլ։ Աս խորհուրդս առաջին անգամ առիթ գտածիս պէս բարեկամիս հաղորդեցի, եւ իրեն ալ կարելի երեւցաւ, սակայն ըսաւ թէ մեծ խոհեմութեամբ գործքի ձեռք զարնելու ենք, վասն զի Բեդերսին աս փոփոխութիւնը շատ անգամ րոպէական բան է, եւ իրեն վրայ երբեմն խենթութեան նշաններ ալ կ՚երեւան։

Նեգերս ամբողջ ժամ մը բարեկամիս քով մնալէն ետեւ վեր գնաց ու մեծ կտոր մ'աղած մսի խորված եւ խմորեղէն մը բերաւ։ Օրուան մնացած մասն եւ բոլոր գիշերին առանձին մնացինք. Աւգոստ զիս իր անկողնին մէջ պառկեցուց եւ մինչեւ առտու հանգիստ քնացայ, որ ժամանակն որ բարեկամս զիս արթնցուց, եւ շուտով ծակէն ներս խրկեց, վասն զի նաւուն վրայ ոտնաձայն կը լսէր։ Վագրը կատարեալ առողջացած էր եւ ամենեւին կատաղութեան նշան չէր ցուցըներ, այլ իր առջեւը դրուած կերակուրն ու ջուրը սիրով կ'ուտէր ու կը լափէր։ Ասիկայ տեսնելով շատ ուրախացայ որ զինքն արկեղ մէջ թող չտուի։

Տասուիրեք օր էր որ Նանդուգեդէն ելած էինք ու բաց ծովու մէջ կը նաւարկէինք։ Յուլիսին երկրորդ օրը նաւապետը բարեկամիս բնակարանն եկաւ անոր անկողնին մօտեցաւ եւ բարեկամական կերպով մ'անոր կռնակը զարնելով հարցուց թէ Եթէ իր կապերը քակելու եւ զինքն ազատ թող տալու ըլլայ, աղէկ կը վարուի՞ ու կը խոստանայ՞ պաշտօնակալաց սենեակը չգալ՝ զորն որ ապստամբք իրենց սեպհականած էին։ Յայտնի է որ Աւգոստ իրմէ պահանջուածները յանձն պիտ'որ առնուր, որուն վրայ նաւապետն շիշ մը մէջէն անոր պուտ մը շաքարօղի խմցուց եւ բոլոր կապերն արձակեց։ Ետքն երկուքը մէկտեղ նաւուն ծածկն ելան ու բարեկամս երեք ժամ հոն մնաց։ Երբ որ ետ դարձաւ, ինձի իմացուց որ անկէ ետքը բոլորովին ազատ է եւ նաւուն մէջ ուզած տեղը կրնայ պտըտիլ. Նաեւ ինձի աղէկ կերակուր եւ սափոր մը ջուր բերաւ։ Նաւը դեռ միշտ նոյն տեղերը կը պտըտէր եւ նաւավարք կանանչ հրուանդանէն գալու նաւուն կը սպասէին. կը կարծէին որ հեռուէն երեւցող առագաստը նոյն նաւինն է։

Յուլիսի 3ին Աւգոստ ինձի երեք վերմակ բերաւ, որոնցմէ հանգիստ անկողին մը շինեցի. բարեկամս նոյն օրն ամբողջ չերեւցաւ. վագրն իր անկողնին վրայ պառկած էր եւ իր ցաւերն անցած կ'երեւային։ Նաւը սաստիկ հովի հարուած մ'ընդունեցաւ, բայց մեծ վնաս չկրեց։ Տիրգ Բեգերս իր Աւգոստին ցուցուցած բարեկամութիւնն օրէ օր կ'աւելցընէր, իր երկայն խօսակցութեանցը մէջ Խաղաղական ովկիանոսին եւ անոր կղզիներուն ստորագրութիւնն ըրաւ եւ բարեկամիս հարցուց թէ ան գեղեցիկ կղզիներուն այցելութիւն մ'ընելը ծովահէնութենէն աղէկ չէ՞։ Աւգոստ մեծ յօժարութեամբ աս հարցման հաստատական պատասխան տուաւ։ Բարեկամս Յուլիսի 4ին օրուան մեծ մասը նաւուն ծածկին վրայ անցուց որպէս զի ապստամբաց խօսքերը մտիկ ընէ եւ անոնց խորհուրդն իմանայ։ Ասոնց մէջ շատ անգամ վէճ կ'ըլլար, որն որ մէկ անգամ կատարեալ կռուոյ փոխուեցաւ եւ անոր մէջ խառվարալը Ճիմ Պոններ անունով նաւաստին ծով նետեցին։ Յուլիսի 5ին սաստիկ մրրիկ մ'ելաւ եւ հարկ եղաւ նաւուն ամէն առագաստները վար առնուլ։ Աս գործողութեան ժամանակը գինով նաւավար մը ծով ինկաւ ու խեղդուեցաւ. իր ընկերները զինքն ազատելու ամենեւին փորձ չըրին. ասկէ ետքը նաւին մէջ միայն տասուիրեք հոգի մնացին, զիս եւ Աւգոստն ալ մէկտեղ համրելով։ Մրրիկն երկրորդ օրը մինչեւ իրիկուն շարունակեց եւ նաւն սկսաւ ջուր առնուլ, որով հարկ եղաւ անդադար ջրհաններով պարպել. նաեւ նաւը քանի մը տեղէն վնասեցաւ եւ ամսոյն 7ին ծովն աւելի եւս սաստկանալով՝ ջուրն հեղեղի պէս ներս սկսաւ գալ։ Նաւավարները նաւին դրսի կողմը ձիւթապատ առագաստ մ'անցուցին եւ անով ջուրը քիչ մ'արգելեցին։ Նոյն օրը Բեդերս Աւգոստին հետ երկայն խօսակցութիւն մ'ըրաւ

եւ անոր իմացուց որ նաւավարներէն երկու հոգի ալ նաւազապետին կողմն անցան, այսինքն յանձն առին ծովահէնութիւն ընել։

Յուլիսի 9ին նաւազապետը զնաւը դէպ ի Անդիլեան կղզիներն ուղղել տուաւ ուր որ իր ծովահէնութեան խորհուրդն ի գործ դնել կ'ուզէր. նոյն օրը ծովն հանդարտ ըլլալով՝ կարելի եղաւ նաւուն վնասուած տեղերը նորոգել։ Տիրգ Բեդերս աս օրս սկսաւ աւելի եւս յայտնութեամբ Աւգոստին հետ խօսիլ եւ անոր իմացուց որ ինքն ամենեւին նաւազապետին պիտ'որ չհնազանդի, այլ ամէն ճիգն ի գործ պիտ'որ դնէ որ նաւուն հրամանատարութիւնն իր ձեռքն անցընէ, եւ Աւգոստին հարցուց որ աս բանիս գործադրութեան ատեն իրմէ ալ կրնա՞յ օգնութիւն յուսալ, որուն բարեկամս յայտնապէս ըսաւ թէ ձեռքէն եկած ամէն օգնութիւնը կ'ընէ։ Ասոր վրայ Բեդերս գնաց նաւավարաց միտքն իմանալու։

Աս խօսակցութեան հետեւեալ օրը Տիրգ Բեդերսին կողմնակցութենէն նաւավար մը յանկարծ սաստիկ տանջուելով՝ մեռաւ. Բեդերս կարծեց որ նաւազապետը զինքը թունաւորած է, եւ կը խորհի իրեն ալ նոյնն ընել. նաւաստիներէն ամէնը նաւազապետին կողմն անցնելու վրայ էին եւ Բեդերս միտքը դրաւ որ նաւն իր ձեռքն անցընելու խորհուրդն ի գործ դնէ. Աւգոստ նորէն իր օգնութիւնը խոստացաւ եւ յարմար առիթ համբերելով իմ նաւուն մէջ գտնուիլս անոր իմացուց։ Բեդերս աս անակնկալ լրին վրայ շատ զարմացաւ, բայց միանգամայն մեծ ուրախութիւն ցուցուց. շուտ մ'երկուքն ալ խուցն իջան. բարեկամս զիս անունովս կանչեց եւ շուտ մը վայրենի նաւավարին հետ բարեկամացանք։ Մէջերնիս միաբանեցանք որ առաջին յարմար առթին նաւը ձեռքերնիս ձգենք եւ ամենէն մօտաւոր նաւահանգիստը տանելով՝ տեղւոյն կառավարութեան յանձնենք։

Բեդերս Խաղաղական ովկիանոս երթալու խոր-հրդէն ետ կեցաւ, վասն զի ասոր նաւավարաց բազմութիւն մը հարկաւոր էր զորն որ չունէինք: Կը յուսար որ իմ եւ Աւգոստին վկայութեամբը դատաւորք իրեն կը ներեն: Մեր խորհուրդն այս-չափ յառաջ տարած էինք երբ որ յանկարծ "Ամէն ձեռք նաւուն վրայ" աղաղակը զանիկայ միջահատեց:

Սաստիկ հով մը նաւը գրեթէ բոլորովին մէկ կողմը պառկեցուցած էր. առագաստները պէտք էր վար առնուլ, զորն որ կարելի չէր շուտով ընել, վասն զի նաւավարք դարձեալ գինովցած էին. բայց վերջապէս մեծ աշխատութենէ եւ նաւը շատ ջուր առնելէն ետքը վար առնուեցան: Հովն երկու անգամ ալ բռնութեամբ նաւուն զարկաւ եւ ասոր ետեւէն ահագին մրրիկ մը սկսաւ. սա-կայն նաւուն վրայ ալ գործ չկար, ուստի Բեդերս եւ Աւգոստ նորէն քովս եկան որ խորհուրդնիս յառաջ տանինք: Յայտնի տեսանք որ նոյն ժա-մանակէն աւելի մեր ուզածն ի գործ դնելու յար-մար ժամանակ չէինք կրնար գտնել, որովհետեւ այնպիսի մրրկի եւ ալէկոծութեան մ'ատեն ոչ ոք պատերազմ ու կռիւ ընելու վրայ կը մտածէ: Եթէ մեր գործքն յաջող երթար կրնայինք մեր հակա-ռակորդներէն քանի մը հոգի ազատել ու նաւը կառավարելու գործածել: Գլխաւոր դժուարու-թիւնը զօրութեանց անհաւասարութիւնն էր. մենք միայն երեք հոգի էինք, մեր հակառակորդներն ինը հոգի. ասկէ զատ բոլոր զէնքերն անոնց քովն էին. մենք միայն երկու ծոցի ատրճանակ ունէինք՝ զորոնք Բեդերս միշտ քովը կը կրէր, եւ մէկ մեծ նաւավարի դանակ մ'որն որ իր գօտիէն կախուած էր: Միանգամայն համոզուած էինք որ նաւապա-պետը Բեդերսին վրայ միշտ կասկած ունէր եւ առթի մը կը սպասէր որ անոր կենացը վերջ տայ. ասոր համար ամէն տապարներն ու կացինները

վերցընել ու պահել տուած էր։ Աս պատճառներուն համար կարելի չէր շուտով գործքի ձեռք զարնել, եւ հարկ էր որ գործողութիւննիս մեծ խոհեմութեամբ սկսինք։

Բեդերս առաջարկեց որ ինքը նաւուն ծածկին ելլէ, հոն պահպանութիւն ընող նաւավարին հետ խօսելու սկսի եւ զինքն յանկարծ բռնէ ծովը նետէ. անկէ ետքն ես եւ Աւգոստ ալ վեր ելլենք եւ երեքնիս մէկտեղ պաշտօնակալաց խցին դուռը գոցենք եւ այնպէս ապստամբներն անոր մէջ փակենք։ Ես աս առաջարկութեան դէմ դրի, որովհետեւ համոզուած էի որ նաւազապետն ամէն զգուշութիւնն ըրած է եւ աս կերպով անակնկալ զինքը նուաճելը կարելի չէ. որդէն նաւուն ծածկին վրայ պահապան կեցընելն աս բանիս յայտնի նշան մըն էր, որովհետեւ կիտորսի նաւերուն ճամբան գտնուած ատենն անոնց վրայ ամենեւին պահապան չիգտնուիր։ Աւգոստ խորհուրդ տուաւ որ Բեդերսին օգնութեամբն իր խցին մէջ դրուած բեռերը պարպեն եւ գետինը բացուած ծակէն անցնելով յանկարծ ապստամբաց վրայ յարձակին. աս խորհուրդն ալ իբրեւ անգործադրելի թող տրուեցաւ։

Բարեբախտութեամբ իմ միտքս խորհուրդ մ'ինկաւ որ գուցէ նաւավարաց աւելորդապաշտական անձկութիւնը գրգռելու եւ նաւազապետին չար խիղճը դրդելու գործք մը մեր բանին յաջողելուն աղէկ կրնայ ծառայել։ Արդէն պատմեցի որ նոյն առտուն նաւավարներէն մէկը սաստիկ տանջուելով՝ հոգին փչած էր, նաւազապետին ձեռքէն գաւաթ մ'օղի առնելէն ու խմելէն ետքը։ Բեդերս հաստատեց որ նաւազապետը զանիկայ թիւնաւորած է, ես իմ գործողութիւնս աս կարծիքին վրայ հիմնեցի։

Մեռնողին դին իր մահուանէն քիչ մ'ետքը զարհուրելի կերպարանք մ'առած էր. փորն ու

ձեռուըներն արտաքոյ կարգի ուռած էին, իսկ երեսը խորշոմած ու կաւճի պէս ճերմակցած էր եւ միայն երկու երեք տեղ կարմիր բծեր ունէր. ասոնցմէ զատ դէմքին վրայ կարմիր գիծ մը ձեւացած եւ աչքին մէկը կարմիր թաւշէ կապի մը պէս գոցած էր: Աս պլանդակ վիճակի մէջ զինքը ծով պիտ'որ նետէին, բայց նաւապետն՝ որուն խիղճը գուցէ իր ըրած եղեռնագործութեան համար անհանգիստ կ'ըլլար, նաւավարաց հրամայեց որ մեռելոյն մարմինն իր անկողնին մէջ դնեն եւ անոր վրայ թաղման հանդէսը կատարեն, ինչպէս որ նաւավարաց մէջ սովորութիւն է: Աս հրամանը տալէն ետեւ նորէն իր խուցը քաշուած էր, չուզելով իր զոհին երեսը տեսնել: Երբ որ հրամանը կատարելու պատրաստութիւններ կը տեսնուէին, մըրիկն այնչափ սաստկացաւ որ հարկ եղաւ մեռելն եւ ամէն ուրիշ զբաղումները մէկդի թողուլ:

Աս պարագան մեր խորհուրդը գործադրելու շատ աղէկ օգնեց. Թեդերս նաւուն ծածկն ելաւ եւ պահանորդ նաւավարին մօտեցաւ որն որ Ալլան կ'անուանուէր, ու խռովարարաց մէջ իր անգըթութեամբն ու վայրենութեամբն անուանի էր: Աս ողորմելւոյն վիճակը շուտ մ'որոշուեցաւ. Թեդերս իր սովորական անտարբերութեամբն անոր քովն եկաւ եւ յանկարծ գօտիէն բռնելով՝ ծովուն ալեացը մէջ նետեց, խեղճն եւ ոչ ճիկ մը հանելու ժամանակ ունեցաւ: Անկէ ետքն զմեզ վեր կանչեց: Մեր առաջին գործքն եղաւ զէնք փնտռել. աս գործողութեան ատեն մեծ զգուշութիւն պէտք էր ընել. ամէն մէկ քայլին պէտք էինք կանգ առնուլ, վասն զի նաւն արտաքոյ կարգի շարժման մէջ էր. սակայն երկայն ատեն ալ նաւուն վրայ չէինք կրնար մնալ. Նաւապետն ամէն րոպէ կրնար վեր ելլել ջրհանները քաշելու հրաման տալու համար, վասն զի նաւն ան-

դադար ջուր կ՚առնուր։ Շատ փնտռելէն ետեւ տեսանք որ ջրհաններուն ձողերը մեզի զէնքի տեղ աղէկ կրնային ծառայել. ես եւ Աւգոստ անոնցմէ մէյմէկ հատ առինք ու պահեցինք. ետքը մեռելին զգեստն հանեցինք ու զինքը ծով նետեցինք։ Աւգոստ Ալլանին տեղը կեցաւ բայց կռնակն ապրստամբաց բնակարանին դուռը դարձուց որպէս զի դուրս ելլողը բանին էութիւնը շուտով չիմանայ։ Ես եւ Թեդերս խուցն իջանք. հոն սկսայ մեռելին նմանելու համար կերպարանափոխ ըլլալ. դիակին վրայէն հանած զգեստնիս ասոր աղէկ ծառայեց վասն զի մասնաւոր ձեւ մ՚ունէր, եւ նիւթն ալ միւսներուն հագածէն տարբեր էր։ Ջանիկայ հագնելէս ետքը սկսայ ամէն կողմս լաթեր խոթել որպէս զի ուռած ձեւանամ ինչպէս որ էր մեռեալը. ձեռուըներս ալ երկու մեծ ձեռքնոց անցուցի եւ անոնց մէջն ալ լաթի կտորներով լեցնելով՝ կատարեալ ուռած ձեւացուցի։ Ասկէ ետքը Թեդերս երեսս կաւիճ քսելով՝ կատարեալ ճերմակցուց ու մատին ծայրը քիչ մը ծակելով երեսս սրսկեց, նաեւ նոյն արեամբ կարմիր գիծն ալ շինեց որն որ մեռելոյն երեսին վրայ ձեւացած էր։ Երբ որ կանթեղի մ՚աղօտ լուսովը խցին մէջի կոտրած հայելւոյն մէջ դէմքս տեսայ, նոյն իսկ ես զարհուրեցայ ու բոլոր մարմնովս սկսայ դողալ, եւ հազիւ կրցայ մեծ ճիգ ընելով ինձի յաղթել ու գործքս յառաջ տանիլ։ Ուշանալու եւ տատամսելու ժամանակը չէր, ուստի շուտ մը նորէն նաւուն ծածկն ելանք։

Զգուշութեամբ սողալով մինչեւ ապստամբաց խցին դուռը հասանք, որն որ բոլորովին գոցուած չէր. դրան առջեւը փայտի կտոր մը դրուած էր, անտարակոյս անոր յանկարծ գոցուիլն արգելելու համար։ Շատ դժուարութեամբ խցին մէջ եղածները կրնայինք տեսնել. ապստամբաց վրայ յարձակելու խորհուրդն ի գործ չդնելնիս մեզի

մեծ բախտ մըն էր, վասն զի յայտնի տեսանք որ ամէնն ալ հարկաւոր զգուշութիւններն ըրած էին։ Մէջերնէն միայն մէկը կը քնանար, ասիկայ խցին սանդուխին վարի ոտքին առջեւը պառկած էր քովը հրացան մը դրած. միւսներն իրենց անկողինները գետինը տարածած եւ անոնց վրայ նստած էին, ու եռանդով մը կը խօսակցէին։ Թէպէտ եւ արբած կ'երեւային՝ որուն յայտնի նշանն իրենց քովը կեցող սափորներն ու շիշերն էին, սակայն դեռ խելքերնին վրանին էր. ամենուն դանակը մէջքէն կախուած էր, երկուքը կամ երեքն ատըրճանակ ալ ունէին. հրացանները շատ մօտ կեցած էին այնպէս որ մինակ ձեռքերնին երկնցընել բաւական էր անոնց հասնելու։

Որչափ որ մըրկին եւ ալեաց խորտակման ձայնին մէջէն իրենց խօսքերը կարող եղանք լսել, խնդիրը յատակագիծ մը շինելու վրայ էր թէ ուր տեղն առաջին անգամ ծովահէնութիւնը պէտք է սկսիլ, եւ միանգամայն թէ ինչպէս կերպով մը Բեդերսն եւ Աւգոստը մէջտեղէն վերցընելու է. վասն զի կ'ուզէին ժամ մը յառաջ ասոնց ձեռքէն ապահովինալ։ Նաւազապետը բացայայտ ըսաւ թէ եթէ կ'ուզենք նաւուն մէջ ապահով ըլլալ, պէտք ենք երկուքն ալ ծով նետել։ Ասկէ ետքն հրամայեց որ զանոնք վար բերեն, որպէս զի աչքին առջեւն ըլլան եւ կարող չըլլան դաւաճանութիւն մը մտածել։

Սեւ խոհակերն ոտք ելաւ որ աս հրամանը կատարէ, սակայն բարեբախտութեամբ նաւուն շարժումէն՝ որն որ նոյն միջոցին սաստկացած էր, գետինը գլորեցաւ, որով մենք ժամանակ ունեցանք ետ քաշուելու եւ մեր ընելիքը մտածելու։ Խափշիկը միայն գլուխը խցին դռնէն դուրս հանեց. կարծելով որ Ալլան դեռ իր պահպանութեան տեղն է, անոր նաւազապետին կամքը ծանոյց։ Բեդերս ձայնը փոխելով՝ անոր պատասխան

տուաւ, որուն վրայ խոհակերին առանց կասկած մ'ունենալու նորէն ներս քաշուեցաւ։

Այն ժամանակն Աւգոստ ու Թեոդորոս ալ ապըստամբաց խուցն իջան, զորոնք նաւազապետը կեղծեալ բարեկամութեամբ ընդունեցաւ։ Աւգոստին պուտ մը շաքարօղի խմցընելէն ետքն իրեն ըսաւ թէ վրադ շատ գոհ եմ եւ ասկէ ետքն զքեզ ալ իմ կողմնակիցներէս մէկը կը համարիմ, ուստի կրնաս միշտ մեր բնակարանը մնալ։ Ես աս ամէն խօսքերը մտադրութեամբ լսեցի եւ բոլոր զօրութիւնս ժողվեցի որ կարող ըլլամ Թեոդորոս նշան տուածին պէս, ինչպէս մէջերնիս որոշած էինք, վար իջնալ։ Ասիկայ ապստամբութեան վրայ խօսք բացած էր եւ եղած արիւնահեղ դէպքերը յառաջ բերելով՝ մեծ ճարտարութեամբ աւելորդապաշտական վախեր զարթուցանելու կ'աշխատէր, որն որ նաւավարաց մէջ շատ հասարակ է։ Թէպէտ եւ իր ամէն խօսքերը չէի լսեր, սակայն ապստամբաց երեսէն յայտնի կ'իմանայի անոնց ըրած ազդեցութիւնը։ Նաւազապետը շատ պլպլած էր, եւ երբ որ խօսքը նոյն առտու մեռնող նաւավարին զարհուրելի կերպարանքին վրայ եկաւ, անիկայ գրեթէ մարածի պէս կ'երեւար։ Թեոդորոս անոր հարցուց թէ հարկ չէ՞ որ ան զարհուրելի մեռելը շուտով նաւէն դուրս նետուի. Նաւազապետն աչուըններն իր բոլորտիքը նստող նաւավարներուն դարձուց, իբրեւ թէ կ'ուզէր իմանալ թէ արդեօք աս գործքը յանձն առնող մը կը գտնուի։ Ոչոք տեղէն շարժեցաւ, ամէնն ալ առհասարակ արտաքոյ կարգի պլպլած կ'երեւային։ Նոյն ժամանակը Թեոդորոս որոշուած նշանը տուաւ եւ ես կամացուկ մը սանդխէն վար իջնալով՝ յանկարծ խուցը մտայ եւ ապստամբաց բազմութեան մէջ տնկուեցայ կեցայ։

Մեր դաւին ազդեցութիւնը մեր ակնկալութենէն շատ աւելի եղաւ։ Նաւազապետը սարսափէն

նստած տեղէն վեր ցատքեց եւ անմիջապէս մե-
ռած գետինը պառկեցաւ, ու նաւուն շարժումէն
կոճղի մը պէս մէկ կողմը գլորեցաւ։ Մնացած
եօթն ապստամբներէն միայն երեքը համարձակե-
ցան մեզի դէմ դնել. միւս չորսը յուսահատած
կերպարանքով քարացածի պէս գետինը գամուած
էին. իրենց սառած անդամներուն կենդանութիւնը
բոլորովին սպառած կ'երեւար։ Խափշիկ խոհակե-
րին եւ երկու նաւավարաց ըրած դիմադրութիւնը
շատ տկար էր եւ շուտով ոչընչի դարձաւ։ Ա-
նոնցմէ մէկուն գլխուն ես ջրհանին փայտովը հա-
րուած մը տուի ու գետինը պառկեցուցի. միւս
երկուքին բանը Բեդերս լմընցուց. իսկ Աւգոստ
լեցուն հրացան մը ձեռք ձգելով՝ գետինը նստող
չորս ապստամբներէն մէկը զարկաւ սպաննեց։ Հի-
մայ միայն երեք հոգի մնացին, որոնք կամաց կա-
մաց իրենց թմրութենէն արթնցած էին, եւ կ'ե-
րեւայ թէ նենգն իմացան վասն զի սաստիկ կա-
տաղութեամբ եւ արիութեամբ սկսան մեզի հետ
կռուիլ, եւ հազիւ Բեդերսին ջղաց արտաքոյ կար-
գի զօրութենէն կրցան յաղթահարիլ։

Անոնցմէ մէկը զԱւգոստ գետինը զարկած, աջ
թեւը շատ տեղէն վիրաւորուած էր, եւ անոր կեան-
քը վերջին աստիճանի վտանգի մէջ ձգած էր։
Ստուգիւ բարեկամս կորսուած էր, որովհետեւ
ես եւ Բեդերս միւս երկու ապստամբաց հետ կը
կռուէինք, եթէ այնպիսի բարեկամ մը մեզի օգ-
նութեան չհասնէր, որուն օգնականութիւնն ամե-
նեւին մտքերնէս անցած չէր։ Աս բարեկամն էր
Վագրն իմ հաւատարիմ շունս։ Աւգոստին հա-
մար վերջին աստիճանի վտանգաւոր րոպէին մէջ
շունը մռմռալով խցին մէջ նետուեցաւ, բարե-
կամիս հետ կռուող նաւավարին վրայ յարձակե-
ցաւ եւ զանիկայ իր ահագին ակռաներովը բռնած
գետինը պառկեցուց։ Թէպէտ եւ Աւգոստ իր ա-
ռած վէրքերուն պատճառաւ մեզի մեծ օգնութիւն

մը չէր կրնար ընել, եւ ես իմ պլանդակ զգեստիս պատճառաւ մեծ գործք մը չէի կրնար գործել, սակայն միայն Բեդերսին զօրութիւնը բաւական եղաւ մնացած երկու ապստամբաց բանը լմընցընելու, որն որ աւելի դիւրաւ կը կատարուէր եթէ տեղւոյն նեղութիւնն արգելք չըլլար։ Ասիկայ գետինը կեցած ծանր նստարաններէն մէկն առաւ եւ ապստամբաց մէկուն գլխին սկաւառակն երկու ճեղքեց, երբ որ անիկայ իմ վրաս հրացան մը պարպելու վրայ էր. ասկէ ետքն անմիջապէս մնացած մէկ ապստամբին վրայ ինկաւ՝ որն որ դեռ դէմ կը դնէր, եւ զանիկայ ալ խեղդեց։ Քանի մը րոպէի մէջ գործքերնիս յաջողութեամբ գլուխ հանեցինք եւ նաւուն տէր եղանք։

Մեր հակառակորդներէն միայն Ռիքարտ Բարքեր անունով մէկն, այսինքն անիկայ՝ զորն որ ես կռուոյն սկսած ատենը ջրհանին փայտովը զարնելով՝ գետինը պառկեցուցած էի, դեռ ողջ եւ միայն թմրած էր։ Ասիկայ կամաց կամաց արթընցաւ եւ ծնկան վրայ ինկած՝ մեզի աղաչեց որ իր կենացը խնայենք. մենք անոր ձեռուըներն ետեւէն կապելը բաւական համարեցանք։ Ղան գետինը պառկեցուցած մարդը մեռած էր. անասունն անոր շնչափողն եւ վզին երակները փրցուցած էր։

Կէս գիշերն արդէն անցած էր. մրրիկը դեռ կը շարունակուէր, եւ նաւուն ծանր շարժելէն յայտնի կ'իմանայինք որ անիկայ նորէն շատ ջուր առած է։ Ալիքները նաեւ նաւուն ծածկին վրայ կը զարնէին եւ խցին մէջ ալ կը մտնէին։ Ղեկին կողմը տախտակները քակուած էին. նաւուն խոհանոցը ջուրը տարած էր ինչպէս նաեւ պզտիկ մակոյկը։ Մեծ կայմին շաչելը կը ծանուցանէր որ քիչ մ'ետքը հովին բռնութեան տեղի պիտ'որ տայ։ Նաւուն առած ջուրը եօթն ոտնաչափի հասած էր։ Մեռելներն իրենց տեղը թող տալով՝ ջրհաններու վազեցինք. Բարքերին ձեռուըները

քակուեցան եւ ինքն ալ սկսաւ աշխատիլ։ Աւգոստ ալ կրցածին չափ կ'աշխատէր, բայց իր վէրքերուն պատճառաւ շատ գործք մը չէր կրնար գործել. ի վերայ այսր ամենայնի սաստիկ ճիգ ընելով կարող եղանք ջրին աւելնալն արգելուլ։ Մեծ անձկութեամբ առաւօտն ծագելուն կը սպասէինք որ կայմը կտրենք ու ծով նետենք։

Մեռելները նաւէն դուրս նետելէն ետքն աս գործքին ձեռք զարկինք ու Բեդերս զօրաւոր տապարի հարուածներով վերջապէս գլուխ հանեց։ Թէպէտ եւ աս վտանգէն ալ ազատեցանք, սակայն գտնուած վիճակնիս միշտ շատ վտանգաւոր էր, վասն զի բոլոր ճիգերնիս մէկտեղ բերելով՝ ալ կարող չեղանք նաւուն խորտակած տեղն՝ ուսկից որ ջուրը ներս կու գար, գոցել. միանգամայն մթերանոցին մէջի բեռերը մէկ կողմը գըլորած էին, որով նաւն ալ դէպ ի նոյն կողմը կը պառկէր։ Ջրհան քաշելն ալ անօգուտ էր. նաեւ կարելի ալ չէր որ շարունակէինք վասն զի ձեռքերնուս մսերը պատռտած էին եւ արիւնը գունդագունդ կը վազէր։ Որովհետեւ նաւը կամաց կամաց աւելի եւս ջրին մէջ կ'ընկղմէր, հարկ եղաւ երկրորդ կայմն ալ կտրել, որն որ իյնալու ատենն երրորդ պզտիկ կայմն ալ կոտրեց ծով ձգեց։ Ասով նաւը միայն տաշտ մը դարձաւ. ալիքները մնացած մակոյկն ալ առին տարին, որով բոլորովին յուսահատական վիճակի մը մէջ ինկանք։

Կէսօրը՝ քանի մը րոպէ այնպէս կ'երեւար որ մրրիկը պիտ'որ դադրի, բայց աս յոյսն երկայն չտեւեց. քիչ մ'ետքն աւելի սաստկութեամբ սկըսաւ եւ ժամը 4ին ան աստիճանն հասաւ որ ալ նաւուն վրայ կենալը կարելի չէր։ Ինձի այնպէս կ'երեւար որ մինչեւ երկրորդ օրը նաւը բոլորովին պիտ'որ քայքայի ու կտոր կտոր ըլլայ։ Կէս գիշերը նաւուն ջուրն աւելի եւս բարձրացած էր. ղեկն այնպիսի բռնութեամբ մը կոտրեցաւ որ նաւը

խրածի պէս սաստիկ ցնցեցաւ։ Անկէ քիչ մ՚ետքն ահագին ալիք մը նաւուն վրայ զարնելով՝ անոր մէջի ամէն դռներն ու մուտքերը բացաւ, եւ ամէն կողմ հեղեղեց։ Ամէնքնիս ալ առհասարակ կորսուած էինք եթէ գիշերը վրայ հասնելէն յառաջ զմեզ չուանով խարսխին կազմածին կապած չըլլայինք. աս զգուշութեան պարտական ենք մեր կենաց ազատութիւնը։ Սակայն ալիքին հարուածը զմեզ գրեթէ ճմլած եւ բոլորովին թմրեցուցած էր։ Երբ որ նորէն միտքս վրաս եկաւ եւ թմրութիւնս անցաւ, ընկերներուս ձայն տուի։ Միայն Աւգոստ պատասխան տուաւ “Մեր բանը լմընցած է. Աստուած ողորմի մեր խեղճ հոգւոյն„։ Քանի մը րոպէ ետքը միւսներն ալ սկսան խօսիլ, եւ զմեզ քաջալերեցին ըսելով թէ դեռ ազատութեան յոյս կայ. Նաւը չիկրնար բոլորովին ընկըղմիլ, վասն զի մէջը շատ պարապ կարասներ կան, եւ թէ մըրիկն ի հարկէ անգամ մը պիտ՚որ դադրի։

Ես խօսքերէն քաջալերուած՝ զիս կապող չուանն աւելի եւս քաշեցի. ընկերներս ալ նոյնն ըրին։ Գիշերը թանձրամած մթութիւն մ՚ունէր. որոտման եւ ծովուն ալեաց ահագին ձայնը չիկրնար խօսքով բացատրուիլ։ Նաւը ջրին երեսին հետ հաւասարած էր. աւելի ճիշդ խօսելու համար ջրէն եւ փրփրադէզ ալիքներէն պաշարուած էինք, որոնց մէկ մասը մեր վրայէն կ՚անցնէին։ Գլուխնիս աւելի ջրին տակ քան թէ անկէ դուրս կը գտնուէին։ Թէպէտ եւ իրարու շատ մօտ էինք, սակայն ոչ զիրար եւ ոչ ալ նաւուն մէկ պզտիկ մասը կրնայինք տեսնել, որն որ մեզի հետ դժոխական կաքաւ մը կը կաքաւէր։ Ատեն ատեն իրարու ձայն կու տայինք որպէս զի զիրար մխիթարենք ու քիչ մը քաջալերութիւն առնունք։ Ամէնէն աւելի Աւգոստ մեզի հոգ կը պատճառէր, որն որ սաստիկ տկարացած էր եւ իր վիրաւորած

թեւովը չէր կրնար ինքզինքը հաստատուն կապել, իսկ մենք իրեն եւ ոչ փոքր օգնութիւն մը կարող էինք ըլլալ։ Բարեբախտութեամբ իր գըտնուած տեղը խարիսխը քաշելու կողմածին շատ մօտ ըլլալով, անով ալեաց հարուածին դէմ կը պաշտպանուէր, ապա թէ ոչ ստուգիւ կորսուած էր։ Ուրիշ պարագայ մ՚ալ մեզի օգնութեան հասաւ. բեռներուն մէկ կողմ մը գլորելովը՝ նաւն ալ նոյն կողմը ծռած էր, եւ որովհետեւ ալիքներն հակառակ ուղղութեամբ կու գային, անով իրենց բռնութենէն քիչ մը կը պաշտպանուէինք։ Ամենքնիս ալ երեսի վրայ պառկած էինք եւ միայն կռնակնիս անդադար հեղեղներ կը թափուէին։

Այս վիճակի մէջ մնացինք մինչեւ որ առտուան լոյսը ծագեցաւ եւ կարող եղանք մեր բոլորտիքն եղած ահագին աւերածները յայտնի տեսնել։ Նաւը կատարեալ կմախք դարձած էր եւ ամէն րոպէ կրնար քայքայիլ. մրրիկը վերջին աստիճանի սաստկացաւ եւ տեղէ մ՚ազատութեան յոյս չէր երեւար։ Քանի մը ժամէ վեր բերներնէս եւ ոչ բառ մը հանած էինք, եւ զարհուրանքով ու դողալով կը սպասէինք որ զմեզ կապող չուանները տեղի պիտ՚որ տան կամ ահագին ալիք մը նաւը քանի մը րոպէ ջրին տակ պիտ՚որ ծածկէ եւ այնպէս զմեզ պիտ՚որ խղդէ։ Բայց աստուածային տեսչութիւնն աս ամէն վտանգէն զմեզ պահեց. կէսօրուան մօտ թանձր ամպերուն մէջէն արեգական բարերար ճառագայթներն սկսան երեւալ, եւ նոյն ժամանակը դիտեցինք որ մրրկին սաստկութիւնը կը սկսի նուաղիլ։

Աւգոստ ալ որ առաջին իրիկունէ վեր անմռունչ կեցած էր խօսելու սկսաւ, եւ իր քովը պառկող Բեդերսին հարցուց թէ դեռ ազատութեան կարելիութիւն մը կա՞յ։ Նաւավարն անմիջապէս պատասխան չտուաւ, աս պատճառաւ սկըսանք վախնալ որ չըլլայ թէ խղդուած ըլլայ. բայց

ժամանակ մ'ետքը տկար ձայնով մը սկսաւ խօսիլ եւ ծանոյց թէ սաստիկ ցաւ կը զգայ. չուանն իր ստամոքսը կը ճնշէ, իրեն օգնութեան պէտք է հասնիլ ապա թէ ոչ ալ չիկրնար ցաւին դիմանալ եւ անշուշտ կը մեռնի։ Թէպէտ եւ աս բանս մեզի մեծ տրտմութիւն ու կարեկցութիւն պատճառեց, սակայն քանի որ ծովը յուզման մէջ էր ամենեւին չէինք կրնար իրեն օգնութիւն մ'ընել. ուստի զինքը քաջալերեցինք որ արիութեամբ ցաւերուն համբերէ եւ խոստացանք որ փոքր կարելիութիւն մ'ալ տեսածնուս պէս իրեն կ'օգնենք։ Մեզի պատասխան տուաւ թէ քիչ մ'ետքն իր բանը կը լմըննայ եւ օգնութիւնն անօգուտ կ'ըլլայ. քիչ մը ժամանակ ալ իր հեծութիւնը շարունակեց եւ ետքը բոլորովին լռեց, որմէ հետեւցուցինք թէ հոգին փչած է։

Գիշերուան սկիզբը ծովը հանդարտելու սկսաւ եւ ալիքները նաւուն աւելի քիչ կը զարնուէին. նաեւ հովին սաստկութիւնն ալ մեղմացաւ։ Քանի մը ժամէ վեր ընկերներուս բերնէն եւ ոչ բառ մը լսած էի։ Աւգուստին ձայն տուի, ինքն ալ անմիջապէս պատասխան տուաւ, բայց այնպիսի տկար ձայնով մ'որ ըսածը չհասկըցայ։ Բէդերս եւ Բարքեր ամենեւին պատասխան չտուին։ Անկէ քիչ մ'ետքը վրաս տեսակ մը թմրութիւն եկաւ եւ երեւակայութեանս առջեւ զանազան գեղեցիկ տեսիլներ ներկայացան. Երբ որ աս վիճակէն արթընցայ, արեւը բարձրանալու սկսած էր. հազիւ մեծ աշխատութեամբ ու ճգամբ ինձի մօտ եղող առարկաները կրնայի յիշել. նաեւ քիչ մը ժամանակ ալ ինձի այնպէս կ'երեւար որ նաւուն մթերանոցին մէջ իմ արկեղս քովը կը գտնուիմ, եւ աս երեւակայութեան ժամանակ Բարքերին մարմինն իմ շունս կը կարծէի։

Երբ որ վերջապէս թմրութենէս բոլորովին արթընցայ, տեսայ որ մրրիկը շատ նուազած եւ

մեղմ ու զով հովի մը դարձած էր. ծովին յուզմունքը գրեթէ խաղաղած կ'երեւար: Ձախ թեւս չուանին կապէն դուրս ելած եւ վրայի միսը կեղեքած էր. աջ թեւս ընդարմացածի պէս եւ ձեռքս չուանին ճնշումէն ուռած էր: Մարմնոյս պլլուած չուանն ալ ինձի սաստիկ ցաւ կը պատճառէր: Բեդերս դեռ կենդանի էր. իր մէջքը փաթթուած չուանն այնչափ քաշուած էր որ գրեթէ անոր մարմինն երկու կտրած էր. երբ որ քիչ մը շարժեցայ, ձեռքովը ինձի իրեն այնչափ ցաւ պատճառող չուանը ցուցուց: Աւգոստ ամենեւին կենդանութեան նշան մը չէր, ցուցըներ նաւուն քակուած տախտակներուն մէկ կտորն իրեն չարաչար վէրք մը տուած էր: Նաեւ Բարքեր բերնէն քանի մը խօսք հանեց. ինձմէ խնդրեց որ բոլոր զօրութիւնս մէկտեղ ժողվեմ եւ զինքն իր գտնուած վիճակէն ազատեմ. գուցէ ան ատեն ըսաւ կարելի է կեանքերնիս ազատել, ուր որ այսպէս անգործ կենալով ստուգիւ պիտ'որ կորսուինք:

Զինքը քաջալերեցի որ համբերէ ու խոստացայ ամէն ճիգն ի գործ դնել եւ իրեն օգնել: Գրպանիս մէջ զմելինս փնտռելով՝ եւ երկայն աշխատութենէ ետքը բանալով՝ ձախ ձեռքովս աջ թեւիս եւ մարմնոյս ուրիշ կողմերը կապուած չուանները կտրեցի որոնք իմ շարժմանս արգելք կ'ըլլային: Բայց երբ որ փորձեցի ոտք ելլել, տեսայ որ ոտուըներս ինձի իրենց ծառայութիւնը կը զլանան եւ կանգուն կենալը կարելի չէ. Նաեւ աջ թեւս ալ մեռածի պէս էր: Բարքեր ինձի ըսաւ որ քիչ մը ժամանակ ալ պառկած կենամ, որով ստուգիւ արեան շրջանը թմրած անդամներուս մէջ նորէն կը սկսի: Իրօք ալ այնպէս եղաւ, եւ գլորելով կարող եղայ Բարքերին քովը երթալ եւ իր կապերը կտրել, որով ինքն ալ սկսաւ իր անդամները գործածել: Շուտ մ'աճապարեցինք

Բեդեբոսին ալ նոյն ծառայութիւնն ընելու. չուանին մէկ կապն իր սրնոցին վերի կողմն՝ հագած երկու շապիկներն եւ մարմնոյն կաշին կտրած ու մսին մէջ մտած էր. չուանը կտրելնուս պէս, արիւնը կամարաձեւ վէրքէն դուրս սկսաւ ցատքել։ Աս ակամայ երակահատութիւնն իրեն շատ օգտակար եղաւ. Բեդեբոս անմիջապէս խօսելու սկըսաւ եւ մեծ թեթեւութիւն կը զգար. նաեւ իր շարժումները մերինէն աւելի ազատ էին։

Աւգոստ դեռ իր անկենդան վիճակին մէջ էր. կը կարծէինք որ իրօք մեռած է, բայց աղէկ քննելով տեսանք որ իրմէ թափուած արեան պատճառաւ մարած էր. վասն զի իր վէրքերուն կապերը քակուած էին։ Զինքը նաւուն մէկ չոր կողմը դրինք եւ իր գրեթէ սառած մարմինը շփեցինք որչափ որ մեր նուաղած զօրութիւնը կը ներէր. կէս ժամ ետքն աչուըները բացաւ, բայց հազիւ երկրորդ առտուն բոլորովին խելքը վրան եկաւ։ Գիշերուան սկիզբը դարձեալ թուխ ամպեր երկինքը պատեցին, եւ խոր մթութիւն մը տիրեց, սակայն ծովը բաւական հանդարտ մնաց որով մենք նորէն սկսանք յուսալ։ Թէպէտ եւ հովն արեւմըտեան հիւսիսէն կը շնչէր, ի վերայ այսր ամենայնի օդը շատ պաղ չէր։ Աւգոստը նորէն չուանով մը կապելու ստիպուեցանք որպէս զի չըլլայ թէ իր տկարութեամբը ծովուն մէջ գլորի։ Անկէ զատ իր զգեստներն, ինչպէս նաեւ մերինները կարելի եղածին չափ չորցուցինք որն որ թէ իրեն եւ թէ մեզի մեծ հանգստութիւն մը պատճառեց։

Արեւը նորէն ծագած ժամանակը ծովը բաւական հանգիստ եւ նաւուն վրան կատարեալ չորցած էր եւ կրնայինք անոր ամէն կողմը պտըտիլ. աս ժամանակս սաստիկ քաղցն ու ծարաւն սկըսան զմեզ տանջել։ Երեք օրէ վեր ոչ կերակուր եւ ոչ ջուր բերաննիս դրած էինք. ուստի հարկ էր որ ամէն կերպով հնարք մը գտնէինք ջրով

լեցուն խցին եւ անոր մօտ գտնուած մառանին մէջէն ուտելու բան մը հանելու։ Աս վախճանաւ երկայն գաւազաններով, չուաններով եւ գամերով տեսակ մը ցանց շինեցինք եւ խցին մէջ երկընցընելով՝ ամէն կողմ պտըտցուցինք․ սակայն դժբախտութեամբ ժամերով եղած փորձերն հետեւութիւն մը չունեցան եւ միայն քանի մը վերմակ կարող եղանք որսալ։

Գրեթէ աս փորձին յաջողութենէն յուսահատած էինք, բայց Բեդերս առաջարկեց որ իր մէջքը չուան մը կապենք եւ զինքը խցին մէջ իջեցընենք, որպէս զի հոն ուտելու բան փնտռէ։ Աս գործքս շատ դժուարութիւններ ունէր, որովհետեւ լուղորդը 15—20 ոտնաչափ տեղւոյ մը մէջ՝ որն որ նաեւ զանազան բաներով աւելի եւս նեղացած էր, զանազան կողմեր պէտք էր դառնալ եւ մառանը մօտենալ եւ անկէ նորէն ետ դառնալ։ Ամէն բան պատրաստուելէն ետքը Բեդերս խցին սանդուխէն վար իջաւ մինչեւ որ ջուրը բերանն հասաւ, անկէ ետքը գլուխը ջրին մէջ խոթելով դէպ ի աջ դարձաւ եւ փորձեց մառանին մօտենալ։ Առաջին փորձը չյաջողեցաւ, եւ չուանին շարժումն՝ որոշուած նշանը տուաւ որ զինքը վեր քաշենք։ Շուտ մը նոյնն ըրինք, բայց մեր անզգուշութեամբը զինքը սանդուխին զարնելով քանի մը տեղէն վնասեցինք։ Հետը բան մը չէր բերած եւ ըրած ճիգովն՝ այնչափ յոգնած էր որ երկրորդ փորձ մ՚ընելէն յառաջ ստիպուեցաւ երկայն ատեն հանգչիլ։

Աս երկրորդ փորձն աւելի եւս դժբախտ էր։ Այնչափ երկայն ատեն առանց նշան տալու ջրին տակ մնաց որ սկսանք կասկածիլ, եւ ալ չկրնալով սպասել զինքը վեր քաշեցինք։ Խեղճը գրեթէ մեռած էր․ շատ անգամ նշան տուած էր որ զինքը քաշենք, սակայն չուանը սանդուխին քովի փայտին վրայ պլլուելով՝ անոր շարժումը չէինք

կրցած իմանալ։ Ուստի որոշեցինք որ երրորդ փորձ մ'ընելէն յառաջ նոյն փայտը տեղէն հանենք, զորն որ միաբան աշխատելով՝ եւ սանդխին վրայ մինչեւ վզերնիս ջրի մէջ կեցած՝ մեծ դժուարութեամբ ի գործ դրինք։ Բեդերս մեզի ծանոյց որ առանց ոտուըներուն ծանր բան մը կապելու խցին մէջ գործ մը չիկրնար գործել, որովհետեւ ջուրը զինքը միշտ դէպ ի վեր կը մղէ։ Երկայն ատեն փնտռելէն ետքն երկաթի կտոր մը գտանք որն որ փտտած փայտին մէջէն դիւրաւ կրցաւ դուրս հանուիլ. Բեդերս զանիկայ ոտուըներուն կապեց եւ ասով կարող եղաւ մինչեւ մառանին դուռն հասնիլ։

Կրնայ մտածուիլ թէ ինչ աստիճանի յուսահատութիւն ունեցաւ, երբ որ դուռը գոց գտաւ եւ իր ըրած բոլոր ճիգերը, թէպէտ եւ բոպէ մ'անոր առջեւը մնաց եւ բանալու աշխատեցաւ, պարապ եղան։ Աւգոստ եւ ես չկրցանք լալերնիս բռնել երբ որ աս յոյսերնիս ալ կորսուած տեսանք. սակայն զմեզ նորէն ժողվեցինք, մեր տկարութեան յաղթեցինք, եռանդեամբ աղօթք ըրինք եւ մեր ողորմելի վիճակէն ազատելու հնարք մը սկսանք մտածել։

Ինը տարի անդադար ինձի արտաքոյ կարգի պատահարներ պատահեցան, սակայն երբեք մէկ դէպք մը զիս այնպէս մեծ ուրախութենէ սաստիկ զարհուրանաց մէջ չձգեց ինչպէս աս միջոցիս պատահած դէպքը։ Նաւուն վրայ պառկած՝ մառանին դուռը բանալու հնարք մը կը մտածէինք, երբ որ յանկարծ դիտեցի որ Աւգոստ մեռելի գոյն մ'առաւ եւ իր շրթունքն անսովոր կերպով մը դողալու սկսան։ Սաստիկ պլպլեցայ եւ սկսայ իրեն հետ խօսիլ, բայց պատասխան մը չառի. կարծեցի որ վրան հիւանդութիւն մ'եկած է, սակայն տեսայ որ իր փայլուն աչուըներն իմ կռնակս գտնուած առարկայի մ'ուղղուած էին։ Ե-

տեւս դարձայ եւ ուրախութենէս սկսայ խայտալ։ Մեծ եւ հազիւ երկու ծովական մղոն մեզմէ հե-ռու նաւ մ'առագաստները բացած դէպ ի մեզի կը մօտենար։ Վեր վեր ցատքեցի, բազուկներս դէպ ի նոյն նաւն երկընցուցի եւ անկէ ետքը քարացածի պէս կեցայ առանց բերնէս վանկ մը հանելու։ Բեդերս այծի ցատքելու նման կաքաւ մը սկսաւ կաքաւել եւ անասնական ձայնի նման աղաղակ մ'արձակեց. ասոր հակառակ Բարքեր տղու մը պէս կու լար եւ կը հեկեկէր։

Նաւը սեւ ներկուած եւ ոսկեգոյն գծերով զարդարուած էր. իր ձեւէն կ'երեւար որ Հոլան-տացի վաճառականի նաւ մըն է։ Ինքն ալ ան ա-հագին մրրկէն՝ որն որ մեր նաւն այնպէս ջախ-ջախած եւ զմեզ ան ողորմելի վիճակին մէջ ձգած էր, շատ վնաս կրած կ'երեւար. կայմերէն մէկը կոտրած էր, եւ ղեկին կողմը տախտակները քայ-քայած էին։ Շատ քիչ առագաստ բացած էր, անոր համար փչած տկար հովը զինքը շատ կա-մաց յառաջ կը մղէր, որն որ մեր անհամբերու-թիւնը մինչեւ խելագարելու աստիճանը սաստ-կացուց։ Մեր արտաքոյ կարգի այլայլութեան մէջ ալ յայտնի կը տեսնէինք որ հոլանտացի նաւը շատ գէշ կը ղեկավարուէր. երբեմն աջ կը դառ-նար երբեմն ձախ, այնպէս որ շատ անգամ ստի-պուեցանք կարծել թէ զմեզ տեսած չեն եւ ու-րիշ ուղղութիւն մը պիտ'որ բռնեն։ Որչափ որ զօրութիւննիս կը բաւէր կը պոռայինք, որուն վրայ կ'երեւար թէ անծանօթ նաւը նորէն իր ցռուկը մեզի դարձընել կ'ուզէ։ Աս ընթացքին՝ միայն ղեկավարը գինով ենթադրելով կրցանք մեկնութիւն տալ։

Նաւը մեզի քառորդ մղոնի չափ մօտենալէն ետքն սկսանք անոր մէջ մարդիկ տեսնել, որոնց զգեստները կը ցուցընէին որ Հոլանտացի են. եր-կու հոգի նաւուն ծայրն առագաստներու կոյտի

մը վրայ նստած էին. երրորդ մ'որն որ կ'երեւար թէ մեծ մտադրութեամբ զմեզ կը դիտէ, առաջին կայմին քովը կեցած էր: Ասիկայ մեծահասակ զօրաւոր եւ թխագոյն մարդ մըն էր. այնպէս կը կարծէինք որ իր զուարթ ձեւերովը կ'ուզէր մեզի ըսել որ համբերենք. սակայն իր վարմունքը մեզի շատ զարմանալի եկաւ, եւ գլխաւորաբար իր անդադար ծիծաղն՝ որով իր երկու կարգ ճերմակ ակռաները կ'երեւային: Երբ որ նաւը մեզի աւելի եւս մօտեցաւ, տեսանք որ իր գլխէ կարմիր լոյրը ծով ինկաւ, բայց ինքն ամենեւին հոգ չըրաւ եւ իր ծիծաղն ու ձեւերը շարունակեց:

Կամաց կամաց բայց յառաջուանէ աւելի հաստատուն ընթացքով նաւը մեզի կը մօտենար. սրտերնուս բաբախումն անհամբեր ակնկալութեամբ մ'աւելի եւս սաստկանալու սկսած էր, երբ որ ան զարմանալի նաւէն դէպ ի մեզ շնչող հովը մեզի անտանելի ժահահոտութիւն մը բերաւ: Ես եւ ընկերներս ստիպուեցանք գլուխնիս ետեւ դարձընել որպէս զի չխեղդուինք. ամենքնիս ալ մարմարի գոյն դարձած էինք: Վերջապէս օտարական նաւը մեր նաւին գլխի կողման առջեւն հասաւ եւ աչքերնուս առջեւն ահագին ու զարհուրելի տեսիլ մը բացաւ, զորն որ ամենեւին պիտ'որ չմոռնամ թէեւ Մաթուսաղայի տարիքն հասնիմ: Քսանուհինգ մինչեւ երեսուն արանց եւ կանանց արդէն փտտելու սկսած դիեր նաւուն վրայ ասդին անդին պառկած էին: Եւ ոչ մէկ ողջ անձ մ'աս դժբախտ նաւափայտին վրայ կը գտնուէր. սակայն մեր մինչեւ ցկատաղութիւն հասած յուսահատութեան մէջ՝ նաեւ աս մեռելները մեզի օգնութեան կանչելու սկսանք, անոնց աղաչեցինք, զանոնք երդմնեցուցինք որ մեզի ողորմին, մեզի՝ սովեալ, ծարաւած եւ խելքերնին կորսնցընելու վիճակի մէջ ինկած դժբախտներուս օգնութեան հասնին:

Երբ որ առաջին զարհուրանաց աղաղակն ար-ձակեցինք, Նաւուն մէջէն ձայն մ'եկաւ, որն որ կատարեալ մարդու ձայնի կը նմանէր, այնպէս որ նաեւ վարժ ականջ մը կրնար խաբուիլ: Օտար Նաւուն միւս կողմը դառնալովս աս ձայնին պատ-ճառը սարսափելի կերպով մ'իմացանք: Մեծա-հասակ ու զօրաւոր մարդն՝ որն որ կայմին մօտ կեցած էր, անդադար գլուխն ասդին անդին կը շարժէր, բայց այնպէսի դիրքի մը մէջ էր որ իր երեսը չէինք կրնար տեսնել: Թեւերը կրթնած փայտին վրայ տարածուած ու ձեռուըները վար կախուած էին. ծնկուըները պրկուած չուանի մը վրայ կը յենուին: Իր կռնակին վրայ ուր շապկին մէկ մասը պատռած էր, արտաքոյ կարգի մեծ ո-րոր մը կեցած էր եւ իր մագիլներովը ու կտցովը մեռելին միսը կը փրցընէր ու կը կլլէր. իր ձիւ-նագոյն փետուրներն արիւնով ներկուած էին: Մեր պոռալու ձայնէն վախնալով՝ Թռչունը քիչ մը ժամանակ սուր նայուածքով մը մեզի նայե-ցաւ, ետքը Թեւերը բացած ծանր Թռիչով դէպ ի վեր բարձրացաւ, որովհետեւ այնպէս կշտապինդ-կերած էր որ չէր կրնար շուտով շարժիլ, եւ ան գարշելի կերակրոյն մէկ կտորը բերանը բռնած՝ քիչ մ'ատեն գլուխներնուս վրայ կը Թռչթռչէր: Վերջապէս բերնի միսը վար Բարքերին ոտուըներ-րուն առջեւը ձգեց, եւ գրիչս յառաջ չերթար իմ նոյն միջոցին զգացած զազրալի ախորժակս նկարագրելու: Երբ որ քայլ մը դէպ ի նոյն ա-րիւնոտած տեղը մօտեցայ, աչքս Աւգոստին աչքին պատահեցաւ՝ որն որ այնպիսի ազդու յանդիմա-նիչ նայուածքով մ'ինծի կը նայէր որ շուտ մը խելքս գլուխս եկաւ, երեսս մէկդի դարձուցած նոյն գէշի կտորը բռնեցի եւ ծով նետեցի:

Մեռելն իր վրան նստող Թռչնոյն շարժումէն՝ ասդին անդին կը շարժէր, եւ աս պատճառաւ մենք զանիկայ կենդանի կը կարծէինք. Երբ որ որոլն

իր վրայէն ելաւ, կռնակի վրայ գետինն ինկաւ եւ ան ատեն կարող եղանք իր երեսը տեսնել: Ասկէ սարսափելի պատկեր մ'երբեք տեսած չեմ: Աչքին խոռոչները պարապ էին, շրթունքը չկային, ակռաները բոլորովին բաց էին, եւ իրենց բացութիւնը մեզի կարծել տուած էր որ նոյն մարդը կը ծիծաղի:

Նաւը կամաց կամաց մեր առջեւէն անցաւ եւ հեռացաւ մեր վերջին յոյսն ալ իր հետը տանելով: Եթէ ան աստիճանի յուսահատած չըլլայինք, կրնայինք զանիկայ (զնաւը) մեր մօտն եղած ատեն գործիքով մը բռնել: Բայց անոր մէջ մեր կենաց պահպանութեան միջոց մը փնտռելու խորհուրդն ան ատեն մտքերնիս եկաւ, երբ որ հազիւ իր մէկ մասը կ'երեւար: Մեր մտաց դատումն ան աստիճանի տկարացած էր, սկսանք նոյն ժամանակ խորհիլ թէ գուցէ լողալով կրնանք անոր հասնիլ: Նոյն ժամանակէն վեր աս նաւին վրայ տեղեկութիւն մ'առնելու շատ ջանք ըրի, բայց պարապ տեղ: Շատ դիւրաւ կրնայինք իր անունը կարդալ, եթէ մեր սարսափին մէջ մտքերնիս եկած ըլլար: Շատ հաւանական է որ նաւուն մէջի դըժբախտները կամ դեղին տենդէ բռնուելով՝ եւ կամ թունաւոր կերակուր մ'ուտելով ամէնքն ալ առհասարակ մեռած ըլլան:

Օրուան մնացած մասը տխուր թմրութեան մը մէջ անցուցինք, եւ երբ որ գիշերուան մութն հեռացող նաւը մեզի բոլորովին անտեսանելի ըրաւ, ան ատեն մեր ողբալի վիճակը նորէն սկսանք ճանչնալ. միանգամայն քաղցին ու ծարաւին սաստկութիւնն աւելի եւս կը զգայինք: Ի վերայ այսր ամենայնի մինչեւ առտու ամենեւին փորձի մը ձեռք չէինք կրնար զարնել, ուստի մեր նեղութիւնն առ ժամանակ մի քնով մոռնալ ուզեցինք՝ որն որ մեր յոգնածութիւնը վրանիս բերած էր: Երկրորդ առտուն ծովը կատարեալ հանդարտ եւ հայելւոյ

պէս շիտակ եւ օդը տաք ու հաճոյական էր։ Դժբախտ Նաւն ա՛լ չէր երեւար։

Բեդերս դարձեալ ջրալից խցին մէջ մտաւ, եւ երբ որ յոգնած՝ դուրս ելաւ, իրմէ ետքը Բալքեր նոյն փորձն ըրաւ, բայց երկուքին ըրած ճիգն ալ մառանին գոցուած դուռը բանալու օգուտ մը չըրաւ։ Որովհետեւ Աւգոստին թեւը դեռ վիրաւոր եւ կապուած ըլլալով՝ իրմէ յոյս մը չէինք կրնար ունենալ, կարգն ինծի եկաւ փորձ մ'ընելու։ Բալքեր խուցը մտած ատենը հետն երկաթի կտոր մ'առած բայց զանիկայ խցին մէջ ձգած էր. երբ որ ես նոյն երկաթը խցին տակը կը փնտռէի, ձեռքս կլոր բան մը պատահեցաւ, զորն որ բռնեցի եւ շուտով զիս վեր քաշել տուի։ Աս որուն աղէկ գոցուած գինւոյ շիշ մըն էր, որուն գիւտին համար երկնից շնորհակալ եղանք. անմիջապէս մնկափայտը հանեցի եւ ամէնքնիս ալ մէյմէկ պուտ նոյն ըմպելիքէն խմեցինք, որն որ մեզի մեծ զուարճութիւն ու հանգիստ պատճառեց։ Ետքը շշին բերանը նորէն գոցեցինք եւ ապահով տեղ մը պահեցինք։

Մառանին դուռը բանալու համար ըրած երկրորդ փորձս ալ առաջինին պէս անյաջող եղաւ. երբ որ անկէ ետ դարձայ, մեծ տրտմութեամբ տեսայ որ ընկերներուս վրայ իրենց խմած գինին տեսակ մը խենթութիւն բերեր է, ուսկից ես անտարակոյս երկրորդ անգամ ջրին մէջ մտնելովս ազատած էի։ Անդադար իրարու անյարմար խօսքեր կը խօսէին. Բեդերս ինծի բիւրաւոր հարցումներ կ'ընէր. Աւգոստ ինծմէ սանտր մը կ'ուզէր որ ցամաք ելլելնէն յառաջ մազերը շտկէ. Բալքեր աս ախտէն աւելի տկար բռնուած էր։ Երրորդ անգամ մ'ալ խուցն իջայ եւ քանի մը մանրերկրորդ ետքը ձեռքս կաշիէ պզտիկ արկղով մը դուրս ելայ։ Շուտ մը զանիկայ բացինք յուսալով որ մէջն ուտելու բան մը կը գտնենք, սա-

կայն տրտմութեամբ տեսանք որ միայն զգեստեղէն եւ քանի մ'ածելի կը բովանդակէր։ Դարձեալ զիս լացին մէջ կախել տուի եւ ետ դարձած ատենս ապակւոյ կոտրուելու ձայն մը լսեցի. իմ դժբախտութեամբս ընկերներս գինւոյն մնացորդը խմած՝ եւ շիշը գետինը զարնելով կտոր կտոր ըրած էին։

Երբ որ իրենց վատութիւնն եւ անձնասիրութիւնն երեսնին զարկի, Աւգոստ սկսաւ լալ. միւս երկուքը կը ծիծաղէին եւ բանն իբրեւ կատակ մը կ'ուզէին ցուցընել. բայց կը յուսամ որ բոլոր կենացս մէջ անգամ մ'ալ այսպիսի ծիծաղ չեմ տեսներ. իրենց դէմքը բոլորովին մաշած եւ զարհուրելի տեսք մ'առած էին։ Գինին զիրենք բոլորովին զգլխած եւ իրենց վրայ մեծ ապլշութիւն մը պատճառած էր, այնպէս որ ըրածնին չէին գիտեր։ Մեծ աշխատութեամբ հազիւ կրցայ զիրենք համոզել որ պառկին. հազիւ թէ գլուխնին գետինը դրին խորունկ քուն մտան։

Ես Նաւուն վրայ մինակ մնացածի պէս էի, եւ անդադար մտքիս առջեւը տխուր խորհուրդներ ու գաղափարներ կու գային. մէյմը կը մտածէի որ անօթութիւնը կամաց կամաց զմեզ տանջելով՝ մեր կեանքը պիտ'որ յափշտակէ. երբեմն կը խորհէի որ մրրիկ մը մեր քայքայած Նաւը կրնայ բոլորովին խորտակել եւ զմեզ ծովուն անդունդներուն մէջ թաղել։ Քաղցին սաստկութիւնը վերջին աստիճանն հասած էր, եւ ալ դիմանալը կարելի չէր. դանակովս կաշիէ արկղէն կտոր մը կտրեցի եւ փորձեցի զանիկայ ուտել. սակայն սաստիկ ճիգ ընելով ալ չկրցայ կլլել։ Ի վերայ այսր ամենայնի ինձի այնպէս կ'երեւար թէ կաշւոյն կտորը պարզ ծամելս ալ անօթութիւնս քիչ մը մեղմացուց։

Իրիկուան դէմ ընկերներս հետզհետէ արթընցան։ Իրենց չափէն աւելի խմած գինին զիրենք

տխուր վիճակի մը մէջ դրած էր։ Ցենդէ բըռնուածի պէս բոլոր մարմնով կը դողային եւ ինձմէ ջուր կ՚ուզէին։ Ես բախտաւոր գտնուեցայ որ ան գինիէն չխմեցի։ Բայց իրենց վիճակն ինձի մեծ հոգ պատճառեց վասն զի եւ ոչ մէկը կարող էր իմ ազատութեան համար ընելու փորձերուս օգնական ըլլալ։ Դեռ նաւուն մառանէն ուտելու բան մը հանելու յոյսս բոլորովին կտրած չէի. բայց առոր ձեռք զարնելու համար հարկ էր որ ընկերներէս մէկն ինձի կապուած չուանին ծայրը բռնէր ու զիս վեր քաշէր, եւ աս բանիս անոնցմէ եւ ոչ մէկը կարող էր։ Միայն Բարքեր միւսներէն քիչ մ՚աւելի զգաստ կ՚երեւար, անոր համար ամէն կերպով ջանացի որ զինքը բոլորովին իր թմրութենէն արթնցընեմ։ Մտածելով որ պաղ բաղնիք մը կրնայ իրեն օգուտ ընել, մէջքը չուան մը կապեցի, զինքը մինչեւ խցին ծակը տարի եւ հրելով ջրին մէջ նետեցի, եւ շուտ մը նորէն վեր քաշեցի. իրօք ալ աս դեղն աղէկ յաջողեցաւ. Բարքեր գրեթէ նորէն կենդանացաւ եւ ինձի օգնեց որ նոյն դեղը նաեւ Բեդերսին եւ Աւգոստի ալ ընեմ։ Նոյն գիշերը մառանէն ուտելու բան մը հանելու համար ըրած անհամար անյաջող փորձերնուս պարագաները պատմելը զանց կ՚առնում։

Յուլիսի 16ին առտուն ծագեցաւ, եւ անպատմելի հոգւոյ ու մարմնոյ վշտերու մէջ օգնութեան յուսով աչքերնիս հորիզոնը դարձուցինք։ Վեց օրէ վեր շիշ մը գինիէն զատ ուրիշ կերակուր կամ ըմպելի բերաննիս դրած չէինք։ Աւելի երկայն դիմանալը կարելի չէր։ Բեդերս եւ Աւգոստ ան աստիճանի նիհարացած էին որ գրեթէ չէին ճանչցուէր։ Բարքեր ալ միւսներուն պէս նիհարացած էր, սակայն իր վշտերը մեծ համբերութեամբ կը տանէր եւ նաեւ զմեզ քաջալերելու կ՚աշխատէր։ Իսկ ես թէպէտ եւ երկայն ատեն

նաւուն մթերանոցը փակուած մնալով տկարացած էի եւ նոյն իսկ մարմնոյս բնական կազմածը տկար էր, սակայն միւսներէն աւելի աղէկ վիճակի մէջ կը գտնուէի: Կէսօրը Բարքեր ծանոյց որ երկիր կը տեսնէ, եւ կ'ուզէր ծով նետուիլ ու լողալով նոյն կարծած երկիրն երթալ. Հազիւ կրցայ զինքն աս բանէս ետ կեցընել: Բեդերս եւ Աւգոստ իր խօս-քին ամենեւին միտ չդրին: Ես շուտով իմացայ որ իր տեսածն ոչինչ էր: Ժամանակ ժամանակ կաշի ծամելը կը փորձէի եւ քիչ մը զօրութիւն կը ստանայի: Աւգոստ եւ Բեդերս իրենց տկա-րութեան պատճառաւ աս բանս ալ չէին կրնար ընել:

Այսպէսով օրն անցաւ եւ իրիկունը մօտեցաւ երբ որ յանկարծ մեր ձախ կողմը նաւու մ'առա-գաստ տեսայ: Թէպէտ եւ մեզմէ 12—15 ծովի մղոն հեռու էր, ի վերայ այսր ամենայնի ինծի կ'երեւար որ դէպ ի մեր կողմը կու գայ. ընկեր-ներէս եւ ոչ մէկը դեռ աս նաւը տեսած էր. երբ որ աւելի եւս մեզի մօտեցաւ, ա՛լ չկրցայ համբերել եւ զանիկայ իրենց ցուցուցի: Ուրա-խութենէ գրեթէ յիմարեցան. մէյմը կու լային, մէյմը կը ծիծաղէին, երբեմն դիւահարի պէս նաւուն վրայ կը տապալէին. իրենց օրինակն իմ վրաս ալ ազդեց եւ սկսայ ես ալ նոյն խենթու-թիւններն ընել: Սակայն աս կարճատեւ ուրա-խութեան շուտով՝ վերջին աստիճանի յուսահա-տութիւն մը յաջորդեց. նաւն ուրիշ ուղղութիւն մը բռնելով՝ սկսաւ մեզմէ հեռանալ եւ քիչ մ'ետքն աներեւոյթ եղաւ:

Հազիւ երկայն ժամանակ անցնելէն ետքը կա-րող եղայ աս նոր հարուածն ընկերներուս ծա-նուցանել, ամէնն ալ աչքերնին վրաս տնկեցին, եւ սկսան ակռանին կրճել, եւ վերջապէս ինծի ըսին թէ ուրիշ անգամ մ'այսպիսի կատակ մը չընեմ: Բայց Աւգոստ իմ ըսածներուս ամենեւին չէր

հաւատար, այլ միշտ կը պնդէր թէ Նաւը մեզի կը մօտենայ, եւ ծովուն վրայ լողացող տնկերը ցուցընելով՝ կ'ըսէր թէ ասոնք Նաւէն մեզի խրկուած մակոյկներն են։ Հարկ եղաւ բռնութեամբ զինքն արգելուլ որ ծով չնետուի։

Բարքերին բռնած ընթացքը բոլորովին ասկէ տարբեր էր։ Նաւը մեր աչքերէն բոլորովին աներեւոյթ ըլլալէն ետքն, երեսն ինձի դարձուց, որուն վրայ այնպիսի երեւոյթ մը տեսայ որ զիս սարսափով լեցուց։ Դեռ բերանը չբացած՝ իր գարշելի առաջարկութիւնը գուշակած էի։ Մեծ հանդարտութեամբ ու լակոնական խօսքերով ինձի առաջարկեց թէ հարկ է որ մէջերնէս մէկը զոհ ըլլայ, որպէս զի միւսներուն կեանքը պահպանուի։ Արդէն աս վերջին կարօտութեան դէպքին վրայ ժամանակէ մը վեր մտածելու սկսած էի, եւ միտքս դրած էի որ դժնդակ մահն յանձն առնում քան թէ աս կերպով կեանքս երկնցընել փորձեմ։ Աղիքներս կրծող անտանելի քաղցը կարող չէր աս որոշումս փոխել։ Բարքերին առաջարկութիւնը Բեդերս եւ Աւգոստ չլսեցին, ուստի զինքը մէկ կողմը կանչեցի եւ ամենայն եղանակաւ ջանացի ու զինքն երդմնեցուցի որ աս զարհուրելի խորհրդէն ետ կենայ, եւ զանիկայ միւս ընկերներուն չըսէ։ Խօսքերս հանդարտութեամբ մտիկ ըրաւ եւ ամենեւին դէմ չխօսեցաւ, որուն վրայ սկսայ յուսալ որ իր առաջարկութենէն ետ կեցած է. բայց յանկարծ բերանը բացաւ եւ սկսաւ ինձի ըսել։ "Գիտեմ որ բոլոր ըսածներդ ստոյգ են, եւ թէ իմ առաջարկութիւնս շատ գարշելի գործք մըն է. սակայն ա՛լ քաղցին չեմ կրնար դիմանալ։ Ինչ հարկ կայ որ ամենքնիս ալ մեռնինք եթէ մէկերնուս մեռնելովը միւսները կրնան ազատիլ. ուստի ամենեւին մ'աշխատիր որ զիս խորհրդէս ետ կեցընես, որոշումս հաստատուն է, եւ անոր գործադրութիւնն ու-

շացընելուս պատճառը՝ վերջին անգամ տեսած նաւերնիս էր, ուսկից օգնութիւն մը կընայինք յուսալ„:

Ան ատեն իրեն աղաչեցի որ իր խորհրդին կատարումն ուրիշ օրուան մը ձգէ, գուցէ, ըսի, նաւ մը մեզի օգնութեան կու գայ, որուն պատասխան տուաւ թէ արդէն կարելի եղածին չափ սպասեցի, եւ ա՛լ առանց կերակուր ուտելու չեմ կրնար ապրիլ. քիչ մ'ետքը նաեւ աս դարմանն ալ գէթ ինծի համար անօգուտ կ'ըլլայ: Երբ որ տեսայ թէ մեղմ խօսիլն իր վրայ ազդեցութիւն մը չըներ, ուրիշ փորձի մը ձեռք զարկի. իրեն ծանուցի թէ ես նաւուն մէջ իրմէ եւ միւս երկու ընկերներէս ալ աւելի զօրաւոր եմ, ուստի թէ որ իր վայրենական խորհրդին վրայ յամառած կենալու ըլլայ, զինքը կը բռնեմ ու ծով կը նետեմ: Իր պատասխանն ան եղաւ որ զիս մէջքէս բռնեց, մեծ դանակ մը հանեց եւ ուզեց կուրծքս խոթել, բայց իր տկարութիւնը թող չտուաւ: Աս գործքը զիս շատ զայրացուց. շուտ մը զինքը մղեցի մինչեւ նաւուն եզերքը տարի, միտքս հաստատուն դնելով որ զինքը ծով նետեմ, եւ իրօք ալ կը նետէի եթէ Բեդերս վրայ չհասնէր:

Բարքեր մեր կռուոյն պատճառը Բեդերսին իմացուց: Ասոր ազդեցութիւնն իմ կարծածէս շատ աւելի զարհուրելի եղաւ: Կ'երեւայ թէ Ագոստ եւ Բեդերս արդէն յառաջագոյն նոյն խորհուրդն ունեցած էին, անոր համար անմիջապէս Բարքերին հետ միաբանեցան եւ ստիպեցին որ շուտով ի գործ դրուի: Ես կը յուսայի թէ գոնէ անոնցմէ մէկն ինծի հետ կ'ըլլայ եւ այնպէս կարող կ'ըլլանք միւսներուն դէմ դնել. սակայն աս յոյսս պարապի ելլելով՝ հարկ էր որ իմ անձիս պահպանութիւնը մտածէի. վասն զի եթէ քիչ մ'ալ դէմ դնէի, երեքը մէկտեղ ինծի դէմ կ'ել-

լէին եւ գուցէ ես աս աղէտալի հանդիսին առաջին զոհը կ՚ըլլայի։ Ուստի ծանուցի որ ես ալ իրենց հետ կը միաբանիմ, միայն ժամ մը ժամանակ ուզեցի։ Մինչեւ նոյն ժամանակն, ըսի, մեգը կը փարատի. եթէ նաւ մը չերեւայ, որոշումնիս ի գործ կը դնենք։ Ժամն անցաւ եւ անոր հետ մեգն ալ. հորիզոնին վրայ ամենեւին նաւ չէր երեւար եւ հարկ էր զարհուրելի վիճակաձգութիւնը սկսիլ։

Ինծի ըսին որ չորս իրարմէ երկայն փայտի կտորներ գտնեմ, զանոնք մաքուր տաշեմ ու ձեռքիս մէջ բռնեմ. ով որ ամենէն կարճը քաշէր, միւսներուն կերակուր պիտ՚որ ըլլար։ Այնչափ պլպլած էի որ հազիւ կարող եղայ պզտիկ փայտի կտոր մը փրցընել եւ չորս կտոր տաշել. մատուըներս իրենց ծառայութիւնը կը զլանային. ծընկուըներս իրարու կը զարնուէին ու միտքս աս զարհուրելի խաղէն ազատելու հնարք մը կը մտածէր։ Մէյ մը կը խորհէի ծնկի վրայ ինկած ընկերներուս աղաչել որ զիս աս վիճակահանութենէն դուրս հանեն. մէյ մը կը մտածէի որ անոնց մէկուն վրայ յարձակիմ զանիկայ զարնեմ սպաննեմ եւ այնպէս վիճակահանութիւնն արգելում։ Սակայն Բարքերին ձայնը զիս աս խորհուրդներէն յառաջ տանելէն արգելեց եւ ստիպեց որ ընելիքս շուտով ընեմ։ Ալ յապաղելը կարելի չէր. սիրտս այնպէս զօրաւոր կը զարնէր որ կը կարծէի թէ կուրծքս պիտ՚որ ճաթեցընէ. տաշած չորս կտոր փայտերս ափիս մէջ բռնած ընկերներուս մօտեցայ եւ Բեդերսին ըսի որ քաշէ։ Առաջին ազատողն ինքն եղաւ. իր քաշած փայտն ամենէն կարճը չէր, որով իմ վտանգս աստիճան մ՚աւելցաւ։

Վրաս մնացած բոլոր զօրութիւնս մէկտեղ բերելով ձեռքս Աւգոստին երկնցուցի։ Ան ալ փայտ մը քաշեց եւ նոյնպէս ազատեցաւ։ Մահը միշտ

ինձի աւելի եւս մօտ կու գար։ Նոյն միջոցին գազանային կատաղութիւն մ'ունեցայ. Բարքերին դէմ սաստիկ եւ դեւային ատելութիւն մը սկսայ զգալ։ Բայց աս զգացումն ալ շուտով անցաւ, եւ արտաքոյ կարգի զարհուրանքով՝ ու գոց աչուըներով՝ անոր ալ իր փայտը քաշել տուի։ Նոյն կարճ ժամանակն ինձի դար մ'եկաւ եւ աչուըներս բանալու չհամարձակեցայ։ Երկայն ժամանակ չկրցայ իմանալ որ արդեօք բախտն իմ կողմն էր թէ ինձի հակառակ, ու չէի համարձակէր դեռ ձեռքիս մէջ մնացած կտորին նայելով՝ ան անորոշութեան վերջ տալ։ Վերջապէս Բեդերս ձեռքս բռնեց. ինձի ճիգ մ'ընելով՝ աչուըներս բացի եւ դէպ ի Բարքեր ուղղած մէկ նայուածքս ինձի իմացուց որ անիկայ կորսուած էր եւ ես ազատած էի։ Խորունկ շունչ մ'առի եւ մարած գետինն ինկայ։

Երբ որ նորէն արթընցայ, անիկայ՝ որն որ աս եղերերգութիւնն առաջարկած եւ ըստ իմիք իր անձին սպանողն եղած էր, հոգին փչելու վրայ էր. առանց ընդդիմութեան թող տուած էր որ Բեդերս զինքն իր դանակովը գետինը պառկեցընէ. իր հոգեվարքը շատ կարճ տեւեց։ Մեր ասկէ ետքն ըրած զարհուրելի կոչունքին պարագաները պատմելը զանց կ'առնում, եւ միայն այսչափս ըսելով կը շատանամ որ մէջերնիս միաբանեցանք ողորմելւոյն գլուխը, ձեռուըներն, ոտուըներն եւ աղիքը ծով նետել. Մնացած մասը մեզի չորս օր, այսինքն Յուլիսի 17էն մինչեւ 20ը բաւեց, որուն յիշատակն երբեք մտքէս պիտ'որ չելլէ։ Ամսոյս 19ին կէս ժամ սաստիկ անձրեւեց. շուտ մ'առագաստի կտոր մը բանալով՝ ջուրը մէջը ժողվեցինք ու խմեցինք, որն որ մեզի նոր յոյս եւ մեծ զօրութիւն տուաւ։

Ամսոյն 21ին մեր գարշելի կերակուրն սպառած էր. օդը հանդարտ եւ գեղեցիկ մնաց։ Երկրորդ

օրն երբ որ իրարու կրթնած նստած էինք եւ մեր դժբախտ վիճակը կը մտածէինք, յանկարծ միտքս նոր խորհուրդ մ'ինկաւ, որն որ զիս նորէն քաջալերեց եւ մեծ յոյս մը տուաւ։ Յիշեցի որ մեր կայմը կոտրելէն ու ծով նետելէն ետքը Բեդերս իր մեծ տապարն ինծի տուած էր որ ապահով տեղ մը պահեմ, եւ ես զանիկայ նաւուն ցռկին կողմի խցին մէջ անկողնի մը վրայ դրած էի. մտածեցի որ աս տապարին օգնութեամբը կրնանք մառանին վրայի կողման տախտակները կոտրել եւ այնպէս անոր մէջէն ուտելիքները դուրս հանել։ Աս խորհուրդն ընկերներուս ալ հաղորդեցի որոնք ուրախութեան տկար աղաղակ մ'արձակեցին։ Շուտ մը ջրալից խցին մէջ մտայ եւ ձեռքս եկած առաջին բանը նոյն տապարն էր։ Անմիջապէս ես եւ Բեդերս, որովհետեւ Աւգոստին թեւը դեռ վիրաւոր էր, փոփոխակի գործելու սկսանք. սակայն մեր տկարութիւնն ստիպեց որ նստելով աշխատինք եւ երկու կամ երեք րոպէն մէյ մը հանգիստ ընենք. ի վերայ այսր ամենայնի բոլոր գիշերը լուսնոյ լուսովն աշխատեցանք եւ առտուանց գործքերնիս գլուխ հանած էինք։

Բեդերս ուզեց որ նախ ինքը մառանն իջնայ. հարկաւոր պատրաստութիւնները տեսնելէն ետքըն, ան ջրով լեցուած տեղն ընկղմեցաւ եւ ձեռքը սափորով մը դուրս եկաւ որն որ ձիթապտղով լեցուած էր։ Շուտ մը մէջերնիս բաժնեցինք ու մեծ ախորժակով կերանք. անկէ ետքը Բեդերս նորէն վար իջաւ. աս անգամ աւելի բախտաւոր էր, վասն զի մեծ խոզի ապուխտ մ'եւ շիշ մը Մատէիրայի գինի դուրս բերաւ։ Ասկէ միայն մէյմէկ պուտ խմեցինք, վասն զի անժուժկալութեան վտանգները չարաչար փորձերով իմացած էինք։ Ապխտին մեծ մասն աւրուած էր եւ միայն ոսկրին քովի միսերն անապական մնացած էին. ուստի աւրուած կողմերը կտրեցինք նետե-

ցինք, իսկ մնացածն երեք մաս բաժնեցինք. Բե-դերս եւ Աւգոստ սաստիկ անօթութեան չկըր-նալով դիմանալ, իրենց մասերն ամբողջ կերան, բայց ես աւելի խնայութեամբ ուզեցի ուտել։

Կէսօրին ես եւ Բեդերս փոփոխակի մառան ի-ջանք եւ երեք ձիթապտղով լեցուն ամաններ, ուրիշ ապուխտ մը, մեծ շիշ մը գինի, եւ մեծ կրիայ մը դուրս հանեցինք։ Աս վերջինը Բեռնարդ-նաւապետը ճամբայ ելլելու ատեն պարգեւ ընդու-նած էր եւ 30 լիտր կը կշռէր, որն որ մառանէն դուրս հանելու ատեննիս շատ ընդդիմութիւն ը-րաւ եւ հազիւ մեր երկուքին զօրութիւնը մէկ-տեղ բերելով կարող եղանք դուրս քաշել։ Ո-րոշեցինք որ աս անասունը կարելի եղածին չափ երկայն ժամանակ ողջ պահենք, անոր համար կըռ-նակի վրայ պառկեցուցինք եւ չուանով մը կապե-ցինք։ Քանի մ'օրէ վեր օդը շատ տաք էր, որով կարող եղանք մեր զգեստներն ու վերմակները չորցընել, եւ Յուլիսի 23ին գիշերը շատ հանգիստ անցուցինք, որն որ յառաջուան վիճակներնուս հա-մեմատութեամբ դրախտի կեանք մը կրնար ըսուիլ։

Երկրորդ առտուն նոր զօրութիւն մ'առած ար-թընցանք. Թէպէտ եւ դեռ վտանգի մէջ էինք, եւ հազիւ կերակուրնիս երկու շաբաթուան կը բաւէր, Թէպէտ նաւերնիս երթալով աւելի եւս կը քայքայէր եւ ալեաց ու հովերուն խաղալիկ մ'եղած էր, ի վերայ այսր ամենայնի յառաջուան վիճակնիս մոռնալով՝ զմեզ մեծ երջանկութեան մէջ կը կարծէինք։ Սաստիկ տարափ մը տեղալով կարող եղանք նորէն քիչ մը ջուր ժողվել եւ սափորներուն մէկը լեցընել։ Կէսօրուան մօտ հովը սկսաւ սաստկանալ, եւ արեւը մտնալէն ետքը այնչափ զօրացաւ որ ստիպուեցանք նոյն գիշերը կապուած պառկիլ, որպէս զի նաւուն վրայ զար-նող ահագին ալիքներն զմեզ ծով չտանին։ Բա-րեբախտութեամբ ջուրը բաւական տաք էր, որով

միայն թացութենէ կը նեղուէին, բայց ցուրտ չէինք զգար։

Յուլիսի 25ին մրրիկը դադրեցաւ, սակայն ալիքները մեր երկու ձիթապտղոյ սափորներն եւ ապուխտը ծով նետած էին, թէպէտ եւ զանոնք աղէկ կապած էինք։ Ծովը դեռ յուզման մէջ ըլլալով՝ չէինք կրնար իջնալու գործողութիւնն յառաջ տանիլ, ուստի մնացած քանի մը ձիթապտղով եւ ջրախառն գինւով ստիպուեցանք շատանալ։ Նաւն երթալով դէպ ի մէկ կողմը կը պառկէր որով հարկ կ'ըլլար որ միշտ կապուած մնանք։ Կէսօրն արեւն ըստ ամենայնի գլուխներնուս վրայ էր, ուսկից հետեւցուցինք թէ հիւսիսային հովերն զմեզ մինչեւ հասարակած տարած են։ Իրիկուան դէմ նաւուն բոլորտիքը շնաձկերու բազմութիւն մը սկսաւ երեւալ, որոնցմէ մէկն ալեաց հետ մէկտեղ վեր բարձրանալով՝ պոչովը նաւին զարկաւ, բայց բարեբախտութեամբ վնաս մը չկրեցինք։ Հետեւեալ երեք օրերն այսինքն ամսոյն 26ը, 27ն եւ 28 շատ տխուր օրեր էին. ծովին հանդարտութեան ատենը նորէն մառան իջնալով՝ տեսանք որ անոր եւ նաւուն մթերանոցին մէջ եղած տախտակամածքը քակուած եւ բոլոր կերակրեղէնը ջրին մէջ թափուած էր, որն որ զմեզ դարձեալ յուսահատութեան մէջ ձգեց։ Տաք օր մը նորէն զգեստնիս չորցուցինք եւ ծովուն մէջ լուացուեցանք որով ծարաւնիս շատ մեղմացաւ. սակայն լուացուելու ատեն մեծ զգուշութիւն պէտք էինք ընել, որովհետեւ շնաձկերը միշտ մեզի մօտ կու գային։ Նաւերնիս այնչափ ծռած էր որ կրնար ամէն րոպէ բոլորովին դառնալ. աս պատճառաւ կարելի եղած պատրաստութիւնները տեսանք եւ ջրի ամաննիս ու կրիան նաւուն եզերքը կապեցինք։

Ամսոյն 29ին Աւգոստին վիրաւոր թեւը սաստիկ տաքնալու սկսաւ, ինքը ծարաւէն արտաքոյ

կարգի կը տանջուէր եւ այնչափ տկար էր որ տեղէն չէր կրնար շարժիլ. իր վէրքը ձիթապտղին քացախովը շփեցինք, բայց աս դեղն իրեն շատ նուազ օգուտ ըրաւ։ Կրած ցաւն անտանելի էր. մեզի կ'ըսէր թէ ժամ մը յառաջ մեռնելու կը բաղձայ եւ կ'աղաչէր որ իր տանջանքներուն վերջ տանք։ Արդէն վերջին ձիթապտուղնիս կերած էինք եւ քաղցն սկսած էր զմեզ տանջել, ուստի որոշեցինք որ կրիան մորթենք. սակայն յուսացուածին չափ միս չգտանք։ Աս նոր պաշարը բարակ շերտեր կտրեցինք եւ ձիթապտղոյ սափորին մէջ դնելով՝ անոր քացախը վրան լեցուցինք որ հոտելէն պահպանուի. աւիկայ կրնար մեզի 15 օր բաւել։ Ջրերնիս բոլորովին հոտած էր եւ չէր կրնար խմուիլ. ծովու մէջ լուացուելէն ալ պէտք էինք ետ կենալ, վասն զի նաւին մօտ շանաձկերը կը վխտային։ Հիւանդին վիճակն երթալով գէշցաւ. թեւը մինչեւ կրնակն ածխոյ պէս սեւցած էր. ոտուըները սառոյցի կտոր դարձած էին։ Վերջապէս Օգոստոսի առաջին օրը սաստիկ տանջուելով հոգին փչեց։ Իր մահը մեր վրայ տխուր ազդեցութիւն մ'ըրաւ. երկայն ատեն մեռելին քով անմռունչ կեցանք, բայց իրիկուան դէմ երբ որ հոտելու սկսաւ, ծով նետեցինք. անմիջապէս եօթը կամ ութ շանաձկեր երեւան ելան եւ իրենց ահագին ակռաներովն իրենց նետուած կերը լափեցին։ Խմած գինինիս մեր չոր կոկորդը կրակի պէս կ'այրէր. շանաձկերն երթալով աւելի եւս մեզի կը մօտենային եւ մեր տուած տապարի հարուածներով ալ չէին հեռանար։ Նաւն արդէն այնչափ ծռած էր որ ա՛լ նստելու չէինք համարձակիր. կը վախնայինք որ բոլորովին դառնալով զմեզ իր տակը կ'առնու։

Վերջապէս զարհուրելի րոպէն հասաւ. նաւն սկսաւ բոլորովին դառնալ. բայց իսկզբան այնպէս կամաց կը դառնար որ անոր եզերքն հաստա-

տուած չուաններով կրնայինք զմեզ վեր բռնել. սակայն քիչ մ'ետքը շարժումը սաստկացաւ եւ զմեզ իր տակն առնելով՝ ջրին մէջ քանի մը կանգուն խորունկ ընկղմեց։ Իր շարժման սաստկութենէն իմ մարմնոյս կապուած չուանը փրթաւ. իմ զօրութիւնս այնչափ նուաղած էր որ ամենեւին կարող չեղայ ազատութեան փորձ մ'ընել. սակայն ծովուն շարժումը զիս շուտ մը վեր հանեց։ Երբ որ նորէն շունչ առի եւ աչուըններս բացի ինքզինքս գրեթէ 50 կանգուն նաւէն հեռու գտայ, որն որ ալեաց մէջ կը ծփար։ Ծովին երեսը սաստիկ յուզման մէջ եւ ճերմակ փրփրով պատած էր. Բեդերսն ամենեւին չկրցայ տեսնել, ասոր հակառակ իմ մօտերս նաւէն դուրս ելած կարասներ եւ ուրիշ բաներ կը լողային։

Մեծ զարհուրանօք շանաձկներուն կը նայէի, որոնք երկայն ժամանակէ վեր մեզի ընկեր եղած էին։ Զանոնք կարելի եղածին չափ ինձմէ հեռու բռնելու համար ձեռուըններովս ու ոտուըններովս ջրին կը զարնէի որ փրփրայ։ Անտարակոյս իմ կենացս ազատութիւնն այս պարզ միջոցին պարտական եմ, որովհետեւ նաւը դառնալէն քիչ մը յառաջ այս գազաններէն ահագին բազմութիւն մ'անոր մօտերը կը գտնուէր, ուստի հարկ էր որ իմ քովս ալ նոյն ժամանակն անոնցմէ քանի մը հատ գտնուէին։ Կամաց կամաց կարող եղայ նաւուն քովը հասնիլ, բայց այնպէս յոգնած էի որ եթէ Բեդերս օգնութեան չհասնէր, կարող չէի անոր վրայ ելլել։ Ինքը նաւը դառնալէն անմիջապէս ետքն անոր ետեւի կողմն ելած էր, եւ հոն հասնելուս պէս ինձի չուան մը նետեց որով՝ կարող եղայ վեր ելլել։

Հազիւ թէ քիչ մը հոգի առինք, մեր զգուշութեամբ կապած պաշարը քննեցինք եւ զարհուրանքով տեսանք որ ծով ինկած էր, որն որ զմեզ բոլորովին յուսահատութեան մէջ ձգեց։

Մեր բարոյական զօրութիւնը բոլորովին սպառած էր. ժամերով պզտիկ տղու մը պէս կու լայինք կարծելով թէ քիչ մ'ետքն անօթութենէ պիտ' որ մեռնինք, թէպէտ եւ քիչ մտադրութիւն մը բաւական էր մեզի աս վախին անհիմն ըլլալը ցուցընելու։ Նաւուն տակն այնչափ առատ ձկան ականջ կապած էր որ մեզի ամիսներով կրնար առողջարար կերակուր մը մատակարարել։ Քիչ մ'ետքն աչուընիս բացուեցաւ եւ իմացանք որ կերակրոյ կողմանէ հոգ ընելու բան չունինք, սակայն ջրի պակասութիւնն սկսանք զգալ. չէ թէ միայն բոլոր խմելիքնիս իրենց ամանովը ծով ինկած էին, այլ նաեւ վերմակներն եւ առագաստներն, ուստի եւ ոչ սաստիկ անձրեւի մը առեն կարելի էր քիչ մը ջրի պաշար ժողվել։ Ասոր օգնելու համար թէպէտ եւ երկինքը ջինջ ու պայծառ էր, շապիկնիս հանեցինք ու տարածեցինք որ բարեբար անձրեւ մը սկսելուն պէս անոնց մէջ քիչ մը ջուր կարող ըլլանք ժողվել։

Օգոստոսին 5էն մինչեւ 7 մեղմ հով մը նաւերնիս ծովի խոտերու մէջ մղեց՝ որոնք ջրին երեսէն վեր բարձրացած էին. հոս տապարով տասնումէկ խեցգետին սպաննեցինք՝ եւ անոնց մէկն քանի մ'անգամ աղէկ եւ համով կերակուր մը պատրաստեցինք։ Նոյն գիշերն ալ կէս մ'արթուն կէս մը մրափելով անցընելէն ետեւ առտուանց դեռ հազիւ լուսանալու սկսած՝ աչուընիս հորիզոնը դարձուցինք եւ յանկարծ նաւ մը նշմարեցինք՝ որն որ առագաստները պարզած դէպ ի մեր կողմն յառաջ կու գար։ Աս ցանկալի երեւոյթն զմեզ ուրախութեամբ լեցուց. ամէն կերպով սկսանք ջանալ որ նաւուն մէջինններն զմեզ տեսնեն. շապիկնիս բոլոր զօրութեամբ կը շարժէինք, վեր վեր կը ցատքէինք, եւ մեր տկարութեան ներածին չափ կը պոռայինք, թէպէտ եւ նաւը դեռ մեզմէ գէթ 15 մղոն հեռու էր։ Ժամ

մ'ետքը սկսանք Նաւուն վրայ յայտնի մարդիկ տեսնել եւ անոնց ըրած կարգէ դուրս շարժումէն իմացանք որ զմեզ տեսած են, որով ամէն վախերնիս փարատեցաւ։ Քիչ մ'ետքը զմեզ Լիվըրբուլի Ճըն Կէ-ի Նաւին սենեակին մէջ գտանք, այնպիսի զգածմանց մէջ՝ որ բացատրելը կարելի չէ։

Ճ'ըն Կիւի Նաւը Լիվըրբուլ լիգեղեցիկ եւ արագընթաց վաճառականի Նաւերէն մէկն էր, 12 թնդանօթ ունէր եւ վայրենի ժողովրդոց հետ առուտուր ընելու ամէն հարկաւոր վաճառքով լեցուած էր։ Իր Նաւաստիքը 45 հոգի էին, ամէնն ալ քաջ մարդիկ. Նոյնպէս Կիւէ Նաւապետն ազնուական մարդ մըն էր եւ շատ տարիներէ վեր հարաւային ծովերուն եւ Խաղաղական ովկիանոսին մէջ վաճառականութեան կը զբաղէր։ Յուլիսի 10ին Լիվըրբուլէն ճամբայ ելլելով՝ 29ին Գաբվերտի կղզին պաշար առած եւ անկէ անընդհատ Նաւարկած էր մինչեւ որ զմեզ Ս. Ռոքոսի հրուանդանին մօտերը գտաւ, ատով իմացանք որ մեր քշքշած Նաւը 25 աստիճան հիւսիսէն դէպ ի հարաւ յառաջ գացեր է։ Նաւապետը զմեզ մեծ մարդասիրութեամբ հոգաց. 15 օրուան մէջ կրած վշտերնուս պատճառաւ ստացած հիւանդութիւննիս եւ տկարութիւննիս բոլորովին բժշկուեցաւ եւ անցածները մեզի գրեթէ տխուր երազի մը պէս կու գային։

Քանի մը շաբաթ շարունակ ճամբորդութիւննիս առանց երեւելի դէպք մը պատահելու յառաջ տարինք, երբեմն կիտորսի Նաւերու կը պատահէինք եւ շատ անգամ Նաեւ մեծամեծ կէտեր կը տեսնէինք։ Սեպտեմբերի 16ին Բարեյուսոյ հրուանդանին մօտերն առաջին անգամ սաստիկ մրրկէ մը բռնուեցանք որն որ զմեզ գրեթէ ալեաց մէջ թաղեց։ Աս առթիս մէջ յայտնի տեսանք որ Նաւը շատ թեթեւ շինուած էր եւ խորութիւնը քիչ էր որով չէր կրնար այսպիսի

մրրկի մ՚երկայն ատեն դիմանալ։ Ի վերայ այսր ամենայնի աս անգամ քիչ վնասով մը կարող եղանք պրծիլ։ Հոկտեմբերի 18ին Գերկուեզլենի կղզին հասանք որն որ նաեւ Տառապանաց կղզի կ՚անուանուի եւ Քրիստմաս Հարպուր Նաւահանգիստը խարիսխ նետեցինք. աս կղզին Բարեյուսոյ հրուանդանին հարաւային կողմն՝ անկէ 800 ծովական մղոն հեռու կը գտնուի։

Աս կղզին եւ նաեւ իր բոլորտիքն եղած կղզեներուն բազմութիւնը բոլոր կողմանէ շատ աղքատ է, եւ միայն քարբեկ խոտն առատութեամբ զանոնք կը պատէ։ Սակայն ամէն տեսակ ծովի թռչուններ անոնց վրայ կը վխտան. նաեւ հոս ծովու հորթ ալ շատ առատ կը գտնուի եւ աս պատճառաւ երկայն ժամանակ աս կղզեաց քով կեցանք։ Անասուններն շատ խրտչոտ էին եւ միշտ իրենց մէջէն պահապան մը կը դնէին որ մեր մօտենալն իմացընէ. ի վերայ այսր ամենայնի 400էն աւելի հորթ զարկինք եւ անոնց մորթերն առնելէն ետեւ Նոյեմբերի 12ին Քրիստմաս Հարպուրի Նաւահանգստէն ճամբայ ելանք։

Կիւի նաւապետը կ՚ուզէր Աւրորա կղզիները գտնել եւ կամ Գադակոնիայի արեւմտեան եզերքը նաւարկել, բայց ետքը միտքը փոխելով՝ որոշեց որ որչափ որ կարելի է դէպ ի հարաւային բեւեռ մօտենայ։ Դեկտեմբերին վերջերը նոյն ուղղութեամբ սկսանք յառաջ երթալ եւ մինչեւ $63^0$ աստիճան լայնութեան հասանք առանց սառուցի պատահելու. միայն հեռուէն սառուցի կըղզիներ կը տեսնէինք։ Արեւմտեան հովը ցուրտ անձրեւ եւ ձիւն բերաւ։ Նոր տարւոյն սկիզբն առաջին անգամ ամէն կողմանէ սառոյցն զմեզ պատեց եւ ողորմելի վիճակի մէջ ինկանք։ Սաստիկ հով մը սառոյցներն այնպիսի զօրութեամբ ղեկին կը զարնէր որ ամէն րոպէ անոր խորտակելուն կը սպասէինք. իրիկուան դէմ դարձեալ

բաց ծովն ելանք։ Հեռուէն հորիզոնին վրայ կարգաւ իրարու ետեւ շարուած ահագին սառուցի լեռներ կ'երեւային. ծովուն մէջ անհամար փայտի կտորներ կը լողային որոնց վրայ գունագեղ ծովային թռչուններու բազմութիւն մը դարած էր։

Յունուարի 13ին մեր յառաջ երթալը դժուարացաւ, որովհետեւ առջեւնիս մեծ սառուցի կղզի մ'ելաւ, որով ստիպուեցանք նաւն արեւմտեան կողմն ուղղել, յուսալով որ հոն արձակ ճամբայ մը կրնանք գտնել։ Թէպէտ եւ ուզածնիս չգտանք, բայց երկու օր ետքը կղզւոյն ծայրն հասանք եւ նորէն բաց ծովն ելանք որուն մէջ դէպ ի հարաւ վազող հոսանքներ կային. միանգամայն օդն ալ աւելի մեղմացաւ։ Հոս նաւարկած ատեննիս նաւավարները սառուցի մը կտորին վրայ մեծ անասուն մը տեսան որն որ հանգիստ պառկած էր, եւ որովհետեւ ծովը կատարեալ հանդարտ էր, երկու մակոյկ վար իջեցուցինք որոնց մէկուն մէջ ես եւ Բեդերս ալ մտանք եւ անասնոյն մօտենալով՝ իմացանք որ ծովական արջ մըն էր։ Քանի մը հրացաններէն արձակուած գնդակներն իրենց նպատակին հասան, բայց անասունը մեծ վնաս մը չկրեց, այլ ահագին բերանը բացած մեր մակուկին վրայ վազեց եւ թաթովը նաւավարներէն մէկը բռնեց։ Անտարակոյս խեղճ մարդը կը կորսուէր, եթէ Բեդերս իրեն օգնութեան չհասնէր. ասիկայ շուտ մը գազանին կռնակը ցատքեց եւ իր դանակն անոր վիզը խոթելով արջը շնչասպառ սկըսաւ ծովուն մէջ ընկղմիլ. բայց Բեդերս զանիկայ չուանով մը կապեց եւ մինչեւ նաւ բերաւ։

Հազիւ թէ նաւուն վրայ ելած էինք նաւավարք սկսան "Երկիր, Երկիր,, պոռալ. զով հիւսիսային հով մը զմեզ դէպ ի եզերքը կը տանէր։ Սակայն ծովէն վեր բարձրացած երկիրը ցամաք երկիր չէր, այլ պզտիկ անապատ կղզի մըն էր՝ զորն որ նաւապետն իր ընկերին անուամբը Պեն-

Նեղի կղզի անուանեց։ Դէպ ի Հարաւ այնչափ յառաջ գացած էինք որ մինչեւ նոյն ժամանակն ուրիշ նաւ մը չէր գացած. ծովը դեռ սառուցէ ազատ էր, օդը պայծառ եւ բաւական մեղմ էր եւ աւելի յառաջ երթալու միայն երկու բան արգելք կ'ըլլար այսինքն փայտի պակասութիւնն եւ լնդագարութիւնն՝ որուն նշանը քանի մը նաւաստիներուն վրայ երեւալու սկսած էր։ Աս բաներս նաւապետն ետ դառնալու կը ստիպէին. սակայն ես համոզուած էի որ եթէ ճամբանիս քիչ մ'ալ դէպ ի Հարաւ շարունակելու ըլլանք մեծ ցամաք երկիր մը պիտ'որ գտնենք, ուստի նաւապետին աղաչեցի որ գոնէ քանի մ'օր ալ դէպ ի Հարաւ նաւարկենք։ Անիկայ աս աղաչանքին սիրով զիջաւ, եւ թէպէտ իր զիջման ունեցած տխուր հետեւութիւնը ինձի դառն ցաւ ու տրտմութիւն պատճառեց, ի վերայ այսր ամենայնի միւս կողմանէ շատ ուրախ եմ որ մեծ գիւտի մը գործիք եղայ եւ գիտութիւնը նշանաւոր գաղտնիքի մը մատադիր ըրի։

Օդը հովն եւ ջրին հոսանքը մեր ճամբան յառաջ տանելու շատ յաջող էին, որով կարող եղանք մինչեւ Հարաւային լայնութեան 83երորդ աստիճանն յառաջանալ. Նոյն ժամանակը կայմին վրայ կեցող դէտը ծանուց որ երկիր կը տեսնէ։ Տեսածը կղզի մըն էր որն որ ուրիշ շատ կղզիներու հետ ընդարձակ կղզեաց խումբ մը կը կազմէր։ Եզերքը շատ բարձր էր եւ ներսի կողմերը մեծամեծ անտառներ կը ծածկէին որն որ մեզի մեծ ուրախութիւն պատճառեց։ Ծովին մէջէ ժայռերուն ու խութերուն պատճառաւ ստիպուեցանք կղզիէն ժամ մը հեռու երկաթ նետել. երկու մեծ մակոյկները պատրաստուելու վրայ էին որ ցամաք մօտենալու ապահով անցք մը գտնեն, երբ որ դիմացէն զինեալ վայրենիներով լեցուն չորս նաւակներ տեսանք՝ որոնք դէպ ի մեզ յա-

ռաջ կու գային: Երբ որ ձայն լսուելու չափ մեզի մօտեցան, նաւապետը ճերմակ թաշկինակով մ'իրենց նշան ըրաւ, որուն վրայ թէ քաշելը թողտուին եւ խառնաձայն խօսակցութիւն մը սկսան ընել՝ որն որ կէս ժամ տեւեց: Չորս նաւակներն 50 կանգուն երկայն եւ 5 կանգուն լայն էին եւ մէջերնին 100էն աւելի մարդիկ կային. վայրենիները հասարակ Եւրոպացւոց մեծութեամբ էին բայց զօրաւոր կազմուած, խիտ մազեր եւ մութ սեւ մորթ մ'ունէին: Զգեստնին անծանօթ անասնոյ մը մորթէն շինուած էր, որուն երկայն մետաքսանման մազերը դէպ ի ներս դարձուած էին. զգեստն իրենց բոլոր մարմինը կը գոցէր եւ միայն երեսնին ձեռուընին ու ոտուընին արձակ կը թողուր: Զէնքերնին ծանր ու սեւ փայտէ գաւազան մըն էր, բայց նիզակներ ալ ունէին, որոնց ծայրը սուր քարեր՝ անցուած էին. Նաւակներուն մէջ սագի ձուի մեծութեամբ քարեր կը տեսնուէին:

Իրենց երկայն խօսակցութիւնը լմըննալէն ետքը, մեծերնին՝ որն որ, ինչպէս ետքն իմացանք, Դու-Վիդ կ'անուանուէր, մեզի նշան ըրաւ որ իրեն մօտենանք. սակայն մենք իրենց բազմութեան պատճառաւ ապահով չհամարեցանք անոր ուզածը կատարել: Դու-Վիդ մեր խորհուրդն իմացաւ եւ միայն իր նաւակովը յառաջ եկաւ, միւս երեքին հրամայելով որ տեղերնին կենան:

Իրեն հետ մեր նաւն եկանք, եւ զարմանքէն ու զգացած ուրախութենէն ինքզինքը բոլորովին կորսընցուց. մէյմը ծափ կը զարնէր, մէյմը ձեռուըներն ազդրներուն ու կուրծքին կը զարնէր ու բառաչելու նման ծիծաղ մը կ'արձակէր: Իր ընկերներն ալ այնպիսի կերպով մը նոյն բաները կ'ընէին որ ամէնքնիս ալ ապշեցանք ու զարհուրեցանք: Զգուշութեան համար վայրենիները փոփոխակի եւ ամէն անգամին միայն քսանական հոգի նաւը խոթեցինք, ուր աքիսի պէս ամէն

անկիւնները կը մտնէին, ամէն բան կը շօշափէին եւ արտաքոյ կարգի համարձակութիւն մը կը ցուցընէին։ Յայտնի կը տեսնուէր որ յառաջագոյն երբեք ճերմակ մարդ տեսած չէին, եւ մեր գոյնն իրենց տհաճութիւն մը կը պատճառէր։ Մեր նաւը կենդանի կը կարծէին, անոր համար կը վախնային որ անոր մէկ տեղը չցաւցընեն. շատ զգուշութեամբ գետինը կը կոխէին եւ նիզակներնուն ծայրը վեր կը բռնէին։ Երբ որ մեր խոհակերը փայտ ճեղքելու ժամանակը տապարին ծայրը նաւուն տախտակամածին զարկաւ, մեծ ցաւ ցուցուցին, տապարին զարկած տեղը ձեռքով շփեցին ու քանի մ'անգամ ծովի ջրով լուացին։

Նաւին խցերուն ու սրահին մէջ գտնուած կահկարասիքը զերենք բոլորովին ապշեցուց։ Մեր զէնքերն ու թնդանօթները մասնաւոր յարգութեամբ մը կը դիտէին եւ զանոնք կուռք կը կարծէին, եւ երբ որ ըստ պատահման իրենց դէմքն հայելւոյ մը մէջ տեսան, այնչափ վախցան ու զարհուրեցան որ սաստիկ աղաղակ մ'արձակելով երեսի վրայ գետին նետուեցան եւ ամենեւին յանձն չառին երկրորդ անգամ մ'ալ ան ահագին առարկային նայիլ։

Ուրիշ վայրենի ազգաց բոլորովին հակառակ, ասոնց վրայ ամենեւին գողութեան միտում չէինք տեսներ. ասկէ զատ իրենց վարմունքը շատ ընտանի եւ բարեկամական էր։ Երբ որ մեծ դժուարութեամբ իրենց հասկըցուցինք թէ կ'ուզենք իրենց հետ վաճառափոխութիւն ընել, մեզի ծանուցին որ իրենց կղզւոյն վրայ առատ կրիայ կը գտնուի, որն որ զմեզ շատ զարմացուց, որովհետեւ նոյն լայնութեան աստիճանին վրայ կրիայ գտնուիլն արտաքոյ կարգի բան մըն էր։

Աս բանս ալ Կիւի նաւապետին՝ կղզւոյն ներսի կողմերն երթալու մէկ պատճառն եղաւ, կը յուսար որ հոն շատ շահաբեր գիւտեր կը-

նալ ընել։ Եւ՝ որ միայն դէպ ի հարաւ յառաջ երթալու կը բաղձայի, աս կղզւոյն վրայ ուշանալուն շատ դէմ դրի. Նաւապետին ըսի թէ հիմայ օդն աղէկ է, եւ չենք գիտեր թէ որչափ ժամանակ դեռ այսպէս պիտ'որ շարունակէ. Հովն ու ջրին հոսանքը մեզի նպաստաւոր են ու ծովը սառուցէ ազատ. Հիմա մեր ճամբորդութիւնը շարունակենք եւ ետքն ի դարձին երբ որ սառոյցը մեր ճամբան կը գոցէ, կրնանք երկայն ատեն աս կղզւոյն առջեւը մնալ եւ անոր ներսի կողմերը քննել։ Երկայն խօսակցութենէ ետքը նաւապետն իմ առաջարկութեանս հաւանեցաւ եւ որոշեց միայն շաբաթ մը կղզւոյն քովը մնալ եւ նոյն ժամանակը Դու-Վիդին առաջնորդութեամբն անոր ներսի կողմերը պտըտելու երթալ։ Տասը վայրենիք իբրեւ պատանդ նաւուն մէջ մնացին, եւ նաւապետն, ես եւ ուրիշ 12 հոգի՝ ամէնքն ալ աղէկ զինեալ՝ առաջին արշաւանքն ընելու համար ճամբայ ելանք։ Նաւազապետին հրաման տուինք որ մեր հեռաւորութեան ժամանակ վայրենիներէն ոչ ոք նաւուն մէջ առնու, եւ եթէ 12 ժամէն ետ չդառնանք, մակոյկներէն մէկը զինեալ մարդիկներով լեցընէ, Մէջը թնդանօթ մ'ալ դնէ եւ մեզի խրկէ։

Աս երկրին մէջ՝ զորն որ ստուգիւ մեզմէ յառաջ երբեք ճերմակ մարդու ոտք կոխած չէր, ամէն մէկ քայլն առած ատեննիս կը համոզուէինք որ երկրիս միւս մասերէն բոլորովին տարբեր տեղ մը կը գտնուինք։ Ծառերն ոչ տաք երկիրներու ոչ ցուրտ գաւառներու եւ ոչ ալ բարեխառն կողմերու ծառերուն նմանութիւն ունէին. Ժայռերուն ձեւն ու զանգուածը բոլորովին տարբեր էր, նոյն իսկ ջուրն ուրիշ երկիրներու ջրին այնչափ աննման էր որ զանիկայ խմելու ընդդիմութիւն մ'ունեցանք։ Թէպէտ եւ մեր մօտէն անցնող հեղեղատին ջուրը սաստիկ արագութեամբ կը սա–

հէր կ՚երթար, սակայն ամենեւին ան վճիտ կերպարանքն ու թափանցկութիւնը չունէր, այլ աւելի արաբացի խեժի լուծուածքի կը նմանէր, եւ զանազան գոյներով կը փայլէր։ Աս երեւոյթն իմ աս կղզւոյն վրայ տեսած զարմանալիքներուն շըղթայի առաջին օղակը կը կազմէ։

Երեք ժամ շարունակ քալելով՝ Դու-Աիդին գեղը հասանք. Ճամբան շատ անհարթ եւ անհանգիստ էր. ցեղապետին սպասաւորներն՝ որոնք իսկզբան միայն նաւակներուն մէջ գտնուող անձինքն էին, երթալով ասդիէն անդիէն եկող նոր վայրենիներով կ՚աւելնային։ Աս բանս յառաջագոյն կարգադրուած կ՚երեւար, անոր համար ալ մեզի շատ կասկած պատճառեց։ Եւ դառնալու ժամանակն անցած էր, ուստի տեսանք որ մեր ապահովութեան համար ուրիշ միջոց չկայ բայց եթէ վայրենեանց վրայ կատարեալ վստահութիւն ցուցընել։ Ի վերայ այսր ամենայնի տեղացւոց վրայ մեծ մտադրութիւն մը սկսանք ընել եւ ամենեւին իրարմէ չբաժնուեցանք։

Ձորի մը մէջ շինուած գեղ մը հասնելով՝ որուն բնակարանները կէս մը ծիւղերէ եւ մորթէ շինուած, կէս մ՚ալ ձորին ժայռերուն մէջ փորուած էին, ամէն բանէ յառաջ մեր մտադրութիւնը գրաւեցին մեզի բոլորովին անծանօթ ընտանի անասուններն։ Ասոնց ամենէն մեծերն իրենց պատճի նման ցուկովը մեր ընտանի խոզը քիչ մը կը յիշեցընէին, բայց թաւ պոչ եւ երկայն ու բարակ՝ այծեամի նման ոտուըներ ունէին եւ շատ դժուարաւ կը քալէին։ Նաեւ շատ ընտանի հաւեղէն ալ տեսանք, որոնց մէջ զանազան ընտանեցած ծովական թռչուններ ալ կը գտնուէին։ Կղզւոյն բնակչաց գլխաւոր կերակուրն աս անասուններէն զատ առատ ձուկ ու կրիայ էր. հոն նաեւ մեծամեծ օձեր կը գտնուէին բայց թունաւոր չէին։



Ժողովրդեան անհամար բազմութիւն մը սաստիկ աղաղակներով մեր դիմացն ելաւ, որոնք առհասարակ մերկ էին. մորթէ զգեստը միայն ան մարդիկն հագած էին, որոնց նաւակներուն մէջ առաջին անգամ ծանօթութիւն ունեցանք. Նաեւ միայն ասոնք զէնք կը կրէին. կանայքն առհասարակ մեծահասակ, վայելուչ կազմածքով եւ գէր էին. միայն իրենց, ինչպէս նաեւ արանց շրթունքը շատ հաստ եւ ուռած էին, այնպէս որ նաեւ ծիծաղած ժամանակնին ակռանին չէին երեւար: Արանց մէջ մորթազգեստներն աւելի պատիւ եւ ուրիշներուն վրայ իշխանութիւն մ'ունէին, հասարակ ժողովուրդը մեծարանօք իրենց կը մօտենար եւ միշտ իրենց Վամբու պատուանունը կու տար: Նաեւ միայն աս վամբուները մորթով շինուած տնակներու մէջ կը բնակէին:

Դու-Վիդին տնակը գեղին մէջտեղն էր, միւս տնակներէն աւելի ընդարձակութիւն ունէր եւ անոնցմէ աղէկ շինուած էր: Ցարկը չորս մեծամեծ սեւ մորթեր կը ծածկէին, որոնք փայտէ սեպերով իրարու հետ միացած էին. գետինը չոր տերեւ տարածուած էր, որն որ գորգի տեղ կը ծառայէր: Մեծ հանդիսութեամբ աս տնակին մէջ տարուեցանք, ուր այնչափ վայրենիք մտան, որչափ որ տեղը կրնար տանիլ: Դու-Վիդ տերեւներուն վրայ նստաւ եւ մեզի ալ նշան ըրաւ որ նոյնն ընենք: Իրեն կամքը կատարեցինք, բայց նոյն ժամանակը մեր դիրքը չէ թէ միայն անհանգիստ այլ նաեւ շատ վտանգաւոր էր: Մենք միայն տասուերկու հոգի էինք եւ 40էն աւելի վայրենիք մեր բոլորտիքը նստած՝ զմեզ այնպէս պաշարած էին որ հարկ եղած ատեն հազիւ կարող էինք ոտք ելլել, բայց ստուգիւ մեր զէնքերը չէինք կրնար բանեցընել: Տնակէն դուրս վայրենեաց բազմութիւնը կը վխտար. անտարակոյս կղզւոյն բոլոր բնակիչքը հոն ժողվուած էին, եւ Դու-Վիդ շարունակ հրաման

կու տար որ մեզմէ հեռու կենան. ասով միայն կրցանք ոտնակոխ ըլլալէն ազատիլ։ Մենք զինքը միշտ մէջերնիս կը բռնէինք եւ որոշած էինք որ թշնամական շարժումը մը տեսնելնուս պէս զինքը զարնենք սպաննենք։

Բայց մեր կասկածն ամենեւին հիմ մը չունէր. մեզի դէմ եւ ոչ փոքր թշնամական ցոյց մ'եղաւ. միայն մեզի մօտ կատարուած զազրալի կոչունք մը զմեզ շատ խռովեց ու գանեցուց. վասն զի կղզեցիք մեծ ախորժակով նոր մորթուած անասնոյ մը փորոտիքը կլլեցին եւ զմեզ ալ հրաւիրեցին որ նոյն կոչունքին մասնակից ըլլանք։ Հազիւ մեծ դժուարութեամբ աս գարշելի կերակրէն կարող եղանք հրաժարիլ։ Ասկէ ետքը կղզեցիք մեզի հետ կղզւոյն եզերքը նաւակութիւն մ'ըրին ու խոստացան մեր նաւն առատ հաւեղէն ու կրիայ բերել։

Սպրեններն իրենց խօսքը բռնեցին, եւ իրենց բերած թարմ պաշարն, ինչպէս նաեւ կղզւոյն վրայ բուսած առատ թրթնջուկն ու դգալուկը մեր հիւանդ նաւաստիներուն եւ մանաւանդ լընդագարութիւն ունեցողներուն շատ օգուտ ըրին եւ զանոնք բոլորովին առողջացուցին։ Ասկէ ետքը նաւն առատ պաշարով լեցուցինք եւ ճամբայ ելլելու պատրաստուեցանք. միանգամայն Դու-Վիդին հետ մասնաւոր դաշինք մը դրինք։ Որովհետեւ մեր կղզւոյն եզերքը նաւարկած ատենը, տեսակ մը ոստրէի սաստիկ առատութիւն տեսած էինք՝ որն որ Ճենաստան ու Հնդկաստան ազնիւ կերակրոց կարգն է եւ շատ սուղ կը ծախուի, նաւապետն ուզեց իր մարդիկներէն երեք հոգի կղզւոյն վրայ թողուլ որ աս ոստրէներէն որսան եւ կարասներու մէջ աղեն, իսկ մենք նոյն միջոցին մեր ճամբան յառաջ պիտ'որ տանէինք։ Դու-Վիդ հոն մնացողներուն ապրուստը պիտ'որ հոգար եւ ասոր դիմաց մեզմէ ապակիէ ուլունք, մկրատ, դանակ,

տապար եւ ուրիշ ասոնց նման բաներ պիտ՚որ ընդունէր. ցեղապետն աս առաջարկութիւնը սիրով յանձն առաւ։

Մեր թող տալու մարդիկներուն բնակութեան եւ անոնց ընելու գործողութեան համար շէնք մը պատրաստել ուզելով՝ ծովուն մօտ տեղ մ՚ընտրեցինք ուր առատ ջուր եւ փայտ կը գտնուէր եւ շուտ մը գործքի ձեռք զարկինք։ Քիչ ժամանակուան մէջ ահագին ծառերու բազմութիւն մը կտրուեցաւ ու շէնքն սկսաւ բարձրանալ, որուն վրայ վայրենիներն ապշեցան։ Ամսոյն վերջերն արդէն մեր գործքը գլուխ հանած էինք եւ կրնայինք ճամբայ ելլել, եթէ Դու-Վիդ զմեզ չստիպէր որ մէկ անգամ մ՚ալ, ինչպէս որ խոստացած էինք, իր գեղին այցելութիւն ընենք եւ հրաժարական ողջոյնը տանք։ Իր խնդիրը մերժել չուզեցինք, մանաւանդ որ իրեն մինչեւ նոյն ժամանակը մեզի ցուցուցած մարդասիրութիւնն ու բարեկամութիւնը կը պահանջէր որ աս վերջին կամքն ալ կատարենք. տեղացւոց վրայ կասկած ունենալու ամենեւին պատճառ մը չունէինք, որովհետեւ մեզմէ երբեք բան մը գողցած չէին, թէպէտ եւ մեր տուած պարգեւներն արտաքոյ կարգի ուրախութեամբ մ՚ընդունելնին կը ցուցընէր որ մեր ունեցած բաներն իրենց առջեւը մեծ յարգ ունէր։ Ի վերայ այսր ամենայնի աս սիրոյ ցոյցերն եւ ընտանութիւնը մեզի դէմ լարուած դարանն մըն էր վորն որ վայրենիք զմեզ բոլորովին ոչընչացընելու համար պատրաստած էին, եւ շատ շուտ իմացանք որ աս կղզեցիներն՝ որոնց վրայ այնպէս աղէկ գաղափար ունեցած էինք, ամենաբարբարոս եւ արիւնարբու ցեղ մըն էին։

Փետրուարին առաջին օրը մեր այցելութիւնն ընելու համար ճամբայ ելանք։ Թէպէտ եւ, ինչպէս շատ անգամ ըսի, ամենեւին կասկածելու առիթ չունէինք, ի վերայ այսր ամենայնի ամէն

զգուշութեան միջոցներն ի գործ դրինք։ Վեց հոգի մեր նաւուն մէջ մնացին եւ հրաման ընդունեցան բոլոր մեր հեռաւորութեան ժամանակը ծածկին վրայ մնալ եւ վայրենիներուն ամենեւին նաւուն մօտենալու թող չտալ։ Թնդանօթները կրկին լեցուեցան։ Որովհետեւ նաւերնիս ցամաքէն գրեթէ մէկ մղոն հեռու խարիսխ նետած էր, ամէն եկած նաւակ կրնար տեսնուիլ եւ հարկ եղած ատեն թնդանօթով զարնուիլ։

Ցամաք ելլողներն 32 հոգի էին ամէնն ալ հրացաններով, ատրճանակներով, դաշոյններով եւ մեծամեծ դանակներով զինած։ Վայրենիներու 100 հոգւոյ չափ բազմութիւն մը ծովեզերքն զմեզ դիմաւորեց։ Երբ որ իրենց անզէն ըլլալուն վրայ մեր զարմանքն յայտնեցինք եւ Գու-Վիգին, որուն լեզուն քիչ մը հասկընալու սկսած էինք, ասոր պատճառն հարցուցինք, մեզի պատասխան տուաւ թէ Եղբարց մէջ զէնքի հարկաւորութիւն չկայ։ Իր խօսքն իրական համարեցանք եւ ճամբանիս յառաջ տարինք։

Ցեղապետն զմեզ նեղ ձորի մը մէջ խոթեց որն որ օձաձեւ դարձուածներ ունէր, եւ այնչափ նեղ էր որ մեծ դժուարութեամբ հազիւ կրնայինք յառաջ երթալ։ Կ'երեւար թէ աս տեղս յառաջագոյն հեղեղատի մը փոսն էր․ երկու կողմի 70—80 ոտնաչափ բարձր ժայռերը պատի պէս շիտակ գետնէն վեր կը բարձրանային, եւ տեղ տեղ իրարու այնչափ մօտ էին որ օրուան լոյսն հազիւ ներս կրնար մտնել։ Վերջապէս տեղն որոգայթ լարելու մէկհատիկ յարմար տեղ մըն էր․ ասոր համար անոր մէջ ոտք կոխելնուս պէս զէնքերնիս պատրաստ բռնելու սկսանք։

Ի վերայ այսր ամենայնի մեծ անհոգութիւն մ'ի գործ դրինք, որուն վրայ նաեւ հիմայ քանի որ միտքս կու գայ չեմ կրնար բաւական զարմանալ։ Զմեզ բոլորովին վայրենեաց կամացը թող տուած

էինք, որոնք ճամբուն բոլոր երկայնութիւնը բըռնած եւ մեր քովերէն եւ առջեւէն ազատ յառաջ կ'երթային։ Անմտութեամբ մեր զօրութեանը վրայ վստահացած էինք, մեր հրացաններուն զօրութիւնը վայրենեաց համար զարհուրելի կը համարէինք, եւ գլխաւորաբար կղզեցիներն անզէն տեսնելնիս եւ իրենց մեզի ցուցուցած բարեկամութիւնը մեզի շատ վստահութիւն կու տար։ Ասով եղաւ որ 5—6 վայրենիներու թող տուինք իբրեւ առաջնորդ մեր առջեւէն երթալու եւ առջեւնիս ելած արգելքները վերցնելու։ Իսկ մենք իրարու քովէն ամփոփ կ'երթայինք եւ որոշած էինք որ ամենեւին իրարմէ չբաժնուինք։ Վայրենեաց գլխաւոր բազմութիւնն աղէկ կարգով ու հանդարտութեամբ մեր ետեւէն կու գար։

Տիրք Բեդերս, Ուիլըմն Ալլեն անուամբ մէկն եւ ես միւս ընկերներնուս աջ կողմէն կ'երթայինք եւ ժայռերուն զարմանալի դիրքը կը դիտէինք՝ որոնք կէս մը պատի պէս շիտակ կեցած կէս մ'ալ վերէն վար կախուած էին։ Ժայռերուն մէջ բացուած ճեղքուած մը մեր մտադրութիւնը գրաւեց. տոր բերանն այնչափ լայն էր որ մարդ մը կրնար անցնիլ, եւ 20 ոտք հորիզոնական ուղղութեամբ խորունկ կ'երթար, անկէ ետքը դէպ ի ձախ կը դառնար. իր բարձրութիւնը 60—70 ոտնաչափ էր։ Ճեղքին մուտքէն քիչ մը հեռու տեսակ մը կաղինի թփեր բուսած էին, որոնց վրայ առատ պտուղներ կը կախուէին։ Բաղձանքիս չկրնալով յաղթել, 5—6 կաղին փրցուցի եւ շուտ մը նորէն ետ դարձայ, բայց տեսայ որ Բեդերս եւ Ալլեն ալ իմ ետեւէս եկած էին։ Իրենց աղաչեցի որ ետ դառնան, խոստանալով իմ փրցուցած կաղիններէս իրենց ալ տալ։ Հազիւ թէ իմ աղաչանքս ի գործ դնելու կը պատրաստուէին, այնպիսի ահագին ցնցում մը զգացի որ կարծեցի թէ երկրին հիմունքը խախտեցան եւ նորէն իր առաջին անկերպարան վիճակը պիտ'որ դառնայ։

Երբ որ քիչ մը խելքս վրաս եկաւ, զգացի որ խղդուելու վտանգի մէջ եմ. ամէն կողմ թանձրամած մութ կը տիրէր, բայց յայտնի կը զգայի որ հողերն անդադար վար կը թափուէին եւ զիս ողջ ողջ թաղելու կը սպառնային։ Ուր որ կոխեցի գետինն ոտքիս տակ տեղի տուաւ, եւ հազիւ մեծ աշխատութեամբ կարող եղայ հաստատուն տեղ մը գտնել։ Երբ որ աս բանս յաջողեցաւ, քիչ մը ժամանակ անշարժ կեցայ եւ ուզեցի իմանալ թէ ինչ պատահած է եւ թէ գտնուած տեղս ուր է։ Նոյն միջոցին ականջս խորունկ ձայն մ'եկաւ, եւ անկէ անմիջապէս ետքը Բեդերսին կէս խղդուած ձայնը լսեցի՝ որն որ ինձի կ'աղաչէր թէ երկնից սիրոյն համար իրեն օգնութեան հասնիմ։ Մեծ ճգամբ եւ աշխատութեամբ կարող եղայ իրեն քով հասնիլ. մարմնոյն կէսը կակուղ հողի մէջ թաղուած էր, եւ պարապ տեղ իր վրայ գտնուած զանգուածէն ազատելու ճիգ կ'ընէր։ Բոլոր զօրութեամբս աշխատելով՝ վերջապէս զինքն ան վտանգաւոր դիրքէն ազատեցի։

Կարծեցինք որ մեր ճամբուն երկու կողմը գըտնուող ժայռերը փլած եւ մեր ելքն ի մշտնջենաւորս գոցած են։ Ողջ ողջ թաղուած ըլլալու խորհուրդն զմեզ յուսահատութեամբ լեցուց, որուն երկայն ատեն կարող չեղանք յաղթել։ Բայց Բեդերս շուտով սթափելով՝ ինձի ըսաւ թէ իրեն հետ մէկտեղ ելք մը փնտռեմ, կը յուսամ որ ըսաւ կրնանք դուրս ելլելու ճեղք մը գտնել։ Իր յոյսը պարապի չելաւ. հազիւ թէ դէպ ի մէկ կողմը քանի մը քայլ յառաջ գացինք, բարակ լուսոյ ճառագայթ մը նշմարեցի, որն որ ինձի մխիթարութիւն տուաւ թէ գէթ օդոյ պակսութենէն չենք կորսուիր։

Նորէն սիրտ առինք եւ իրար քաջալերեցինք՝ ըսելով թէ դեռ ամէն բան յաջող վիճակի մէջ մնալու կարելիութիւն կայ։ Թափուած հողե-

րուն եւ քարերուն վրայէն սողալով աւելի լուսաւոր տեղ մը հասանք եւ իմացանք որ մեր ճամբուն ան տեղն է ուր որ դէպ ի աջ դառնալով անկիւն մը կը կազմէր. երբ որ աս անկիւնը դարձանք մեծ ուրախութեամբ ժայռերուն վերի կողմն ընդարձակ ճեղքուած մը տեսանք: Եթէ կարող ըլլայինք ան ճեղքուածին հասնիլ, ազատութիւննիս գտած էինք:

Աս միջոցիս յիշեցի որ նոյն տեղը մոռած ատեննիս երեք հոգի էինք, եւ մեր երրորդ ընկերն Ալլեն մինչեւ նոյն ժամանակը դեռ չէր երեւար. շուտ մը նորէն ետ դարձանք որ զինքը փնտռենք: Կակուղ հողի մէջ գրեթէ լողալով՝ անպատմելի դժուարութեամբ կարող եղանք յառաջ երթալ, եւ երկայն փնտռելէն ետքը Թեդերս ինձի ըսաւ թէ մեր ընկերին մէկ ոտքը բռնեցի, բայց մարմնոյն միւս մասերն ամբողջ հողի մէջ թաղուած են ու կարելի չէ զանիկայ դուրս հանել: Թեդերս իրաւունք ունէր, մեր խեղճ ընկերն արդէն մեռած պիտ՚որ ըլլար: Խոր տրտմութեամբ լեցուած՝ անոր մարմինն իր բախտին թող տուինք եւ նորէն ճեղքուածին դարձանք:

Մեր ժայռերուն վրայէն մագլցելով վեր ելլելու համար ըրած ամէն փորձը պարապի ելաւ, որովհետեւ անոնք առհասարակ սահուն աճառաքարէ կազմուած էին՝ որոնց վրայ ոտքերնիս կը սահէր: Վերջապէս մտքերնիս ինկաւ որ մեր քովն եղած մեծ դանակներով կրնանք ան կակուղ քարերուն մէջ ոտնատեղիներ փորել եւ այնպէս վեր ելլել. ասով կարող եղանք ան վտանգաւոր տեղէն ազատիլ եւ այնպիսի տեղ մը հասանք՝ ուսկից կապոյտ երկնից մէկ մասը կրնայինք տեսնել: Կրած զարհուրանքնիս եւ ըրած ճիգերնիս մեր զօրութիւնը սպառած էր եւ այնչափ տկարացած էինք որ չէինք կրնար ոտքի վրայ կենալ կամ բերաննիս շարժել ու խօսք մը խօսիլ: Թե-

դերս կը կարծէր որ ատրճանակնիս՝ որոնք միայն քովերնիս մնացած էին, վասն զի հրացանները հողին մէջ թաղուած մնացին, պէտք ենք արձակել որպէս զի ընկերնիս մեր վիճակն իմանան։ Վերջին դէպքերը ցուցուցին որ ատրճանակ պարպելը զորն որ ըստ պատահման չըրինք, մեզի շատ վնասակար պիտ՚որ ըլլար. բայց արդէն կուահելու սկսած էինք թէ մեր կենաց դէմ ամօթալի դարան մը գործուած է, անոր համար որոշեցինք ամենեւին մեր ուր ըլլալը վայրենիներուն չիմացընել։

Քանի մը հանգչելէն ետքը աւելի յառաջ գացինք եւ սկսանք զարհուրելի աղմուկ եւ աղաղակ մը լսել։ Ընթացքնիս շուտցընելով՝ այնպիսի տեղ մը հասանք. ուսկից թէպէտ եւ ծառերու մէջ ծածկուած՝ ամէն կողմ համարձակ կրնայինք տեսնել. Հոս շուտ մ՚իմացանք ան ահագին ցնցման պատճառն՝ որն որ զմեզ ան խեղճութեան մէջ ձգած էր։ Կեցած տեղերնէս ան նեղ անցքն՝ ուսկից մեր ընկերներուն հետ անցած էինք, ամբողջ կը տեսնէինք։ Վայրենիք անոր մէջերը տեղ մը կակուղ քարերուն տակը փորած՝ ցիցերով հաստատած, ու ցիցերն իրարու հետ որթի ճիւղերով կապած էին, այնպէս որ 12 զօրաւոր անձինք զանոնք միաբան քաշելով կրնային բոլոր անոնց վրայ կեցած քարերն ու հողերը վար թափել եւ հոն գտնուող մարդիկն անոնց տակ թաղել։ Անտարակոյս մեր խեղճ ընկերներն աս դըժբախտութեան պատահած պիտ՚որ ըլլային. միայն մենք մեզի պատրաստուած գերեզմանէն պրծած էինք եւ բոլոր կղզւոյն վրայ մեզմէ զատ ճերմակ մարդ մնացած չէր։

Սակայն մեր վիճակն ալ շատ խեղճ էր, վասն զի կամ վայրենիներն զմեզ անողորմ մահուամբ մը պիտ՚որ սպաննէին, եւ կամ անոնց գերի պիտ՚որ ըլլայինք։ Երկայն ատեն անտառին ու ժայ-

ուերուն մէջ պահուըտած մնալ կարելի չէր. քաղցն ու ցուրտն ի հարկէ զմեզ պիտ'որ ստիպէին ան անշէն տեղը թող տալու: Ամբողջ կղզին վայրենիներով լեցուած կ'երեւար. կը տեսնէինք որ մօտաւոր կղզիներէն անհամար բազմութիւն մը լաստերով մեր կղզին կու գային, անշուշտ մեր նաւուն կողոպուտներուն մասնակից ըլլալու համար: Աս նաւը դեռ իր խարիսխ նետած տեղը հանդարտ կեցած էր. կ'երեւար թէ մէջը գտնուողներն իրենց սպառնացող վտանգին վրայ եւ ոչ փոքր կասկած մ'ունէին: Ինչպէս յօժարութեամբ անոնց քովը երթալ կ'ուզէինք որ կամ փախչելու եւ կամ իրենք զիրենք պաշտպանելու ատեննին իրենց օգնական ըլլանք. ի վերայ այսր ամենայնի կարող չէինք առանց զմեզ մահուան յայտնի վտանգի մէջ ձգելու՝ նշանով մ'իրենց վտանգաւոր վիճակն իմացընել: Թէպէտ եւ առըճանակ մ'արձակելը բաւական էր իրենց իմացընելու թէ դժբախտութիւն մը պատահած է, բայց անով չէին կրնար իմանալ որ միայն շուտով երկաթը վերցընելով ու ճամբայ ելլելով կրնան իրենց կեանքն ազատել, եւ թէ ալ հոն սպասելու պարտականութիւն չունին, վասն զի իրենց ընկերներն ապրելէն դադրած են: Մեր նշանը նաեւ թշնամւոյն դէմ պատրաստուելու ալ չէր կրնար ծառայել, բայց մեզի մեծ վնաս կրնար հասցընել, աս պատճառաւ առըճանակ արձակելէն ետ կեցանք:

Ծովեզերքը գտնուող նաւակներէն մէկը բըռնութեամբ գրաւելու եւ անով մեր նաւն երթալու խորհուրդն իբրեւ անգործադրելի մէկդի թողտուինք, որովհետեւ վայրենիք ամէն կողմ կը վխտային եւ բոլոր անցքերը բռնած էին, եւ որոշեցինք որ տեղերնիս հանդարտ կեցած՝ հանդիսատես ըլլանք ան պատերազմին՝ որն որ քիչ ժամանակէն պիտ'որ սկսէր: Վասն զի հազիւ կէս ժամ անցած էր երբ որ 60—70 վայրենիներով

լեցուն նաւակներ ու լաստեր ծովածոցին հարաւային ծայրն երեւնալու սկսան: Աւազակները միայն կարճ ցպերով ու քարերով զինած էին: Քիչ մ՚ետքն ուրիշ նոյնչափ բազմութեամբ մաս մ՚ալ ծովածոցին միւս կողմանէ սկսաւ գալ, րոպէի մը մէջ նաւերնիս անհամար վայրենիներէ պաշարուեցաւ որոնք ամենայն կերպով անոր տիրել կ՚ուզէին:

Ամենեւին տարակոյս չկար որ վայրենամիտ աւազակաց ուզածը պիտ՚որ յաջողէր. նաւուն մէջ մնացած վեց նաւավարները թէ թնդանօթները գործածելու եւ թէ նաւը պաշտպանելու բաւական չէին, եւ չէին կրնար այսպիսի անհաւասար պատերազմ մը յաջողութեամբ գլուխ հանել: Սակայն անոնք առանց ասոր միտ դնելու սկսան պատրաստուիլ որ դէմ դնեն, վասն զի տեսանք որ թնդանօթներուն բերանն իրենց մօտեցող նաւակներուն դարձուցին, երբ որ լաստերը դեռ քառորդուան մը ճամբայ ետ մնացած էին: Դըժբախտութեամբ՝ արձակուած թնդանօթն ամենեւին ազդեցութիւն մը չունեցաւ. մեր բարեկամներն իրեն այլայլութեան մէջ թնդանօթներուն բերանը շատ վեր ուղղած էին. գնդակները թշնամեաց գլխոյն վրայէն անցան գացին, եւ ոչ մէկ մարդ մը զարնուեցաւ ոչ ալ նաւակներէն մէկը վնասեցաւ: Միայն ելած թնդիւնը քիչ մ՚ազդեցութիւն ըրաւ. սեւ անօրէններն այնպէս զարհուրեցան որ քիչ մը ժամանակ գտնուած տեղերնին կանկ առին կեցան, եւ կ՚երեւար թէ իրենց խորհրդէն ետ կենալու կը մտածէին: Գուցէ իրօք ալ նոյնը կ՚ընէին եթէ մեր նաւուն պաշտպանողները նոյն միջոցին իրենց դէմ հրացանի կրակ մը տեղալու սկսէին:

Սակայն իրենք ասիկայ չըրին, այլ նաւուն միւս կողմն անցան որպէս զի մօտեցող լաստերուն արժանաւոր ընդունելութիւն մ՚ընեն. աս շարժումը

զարհուրած վայրենեաց ժամանակ տուաւ իրենց զարհուրանքէն սթափելու եւ տեսնելու թէ ամենեւին վնաս մը կրած չեն։ Շատ ահագին եւ ապականիչ եղան երկրորդ կողմանէ արձակուած թնդանօթները. 7—8 լաստեր թնդանօթի գընդակներէն ծակծկեցան, 30—40 վայրենիք նոյն տեղը մեռան եւ 100էն աւելի չարաչար վիրաւորեցան ու ծով թափեցան. միւս լաստերուն վրայ մնացողները խելքերնին կորսնցուցին եւ անմիջապէս կծիկը դրին, առանց միտ դնելու իրենց վիրաւոր ընկերներուն աղաղակին՝ որոնք ծովուն երեսը ծածկած էին եւ իրենցմէ օգնութիւն կը խնդրէին։ Բայց վայրենեաց կրած կոտորածը մեր ընկերներուն օգուտ մը չըրաւ. Նաւակներուն մէջ գտնուողներն արդէն միւս կողմանէ նաւուն քովը հասած եւ անոնցմէ մէկ մասը վեր ելած էին. գազանամիտ սեւերը վեց նաւավարներն անմիջապէս գետինը զարկին եւ կտոր կտոր ըրին։ Լաստերուն մէջ գտնուողներն իրենց ընկերներուն յաջողութիւնը տեսնելով՝ նորէն ետ դարձան որպէս զի աւարէն իրենց ալ մաս հանեն։ Հինգ րոպէի մէջ մեր նաւն ապականութեան եւ անկարգութեան ասպարէզ մը դարձաւ. Նաւուն ծածկը կտոր կտոր եզաւ, առագաստները, չուանները, շղթաններն եւ ուրիշ շարժական բաները կողոպտուեցան, եւ քաշելով՝ հրելով ու մղելով՝ նաւը ծովեզերքին մօտ տարուեցաւ ուր աւազին մէջ խրեցաւ մնաց։ Նոյն ժամանակը նաեւ Դուվիդ հոն եկաւ. պատերազմին բոլոր ժամանակն աս ցեղապետը բլրի մը վրայ կեցած՝ եղածները կը դիտէր. երբ որ իրենները յաղթութիւնը կատարեալ ստացան ան ժամանակ համարձակեցաւ ինքն ալ իր սեւ պաշտօնեաներովը կռուոյն ասպարէզը մօտենալ իր աւարամասն առնելու համար։

Ան ատեն մենք ալ համարձակութիւն առինք մեր թաքուստը թող տալու եւ ծովածոցին մօտ

եղող բլուրը լրտեսելու. Հոն աղբիւր մը գտանք ու մեր ծարաւն անցուցինք. Ետքը կաղնով աղէկ կշտացանք եւ աս պտղէն առատ պաշար մը ժողվելով նորէն առաջին տեղերնիս կը դառնայինք երբ որ յանկարծ թփերուն մէջէն գէր արագիլ մը ծանր թռիչով վեր բարձրանալու սկսաւ։ Բեդերս աճապարեց թռչնոյն վզէն բռնեց ու դանակովը սպաննեց։ Աս գիւտը մեզի մեծ ուրախութիւն պատճառեց, վասն զի անկէ ետքը գէթ մէկ շաբաթ քաղց կրելու հոգէն կրնայինք ազատ ըլլալ։

Նորէն ժայռին ճեղքուածքը գացինք, ծառի ճիւղերով եւ խոտերով անոր մուտքը գոցեցինք որպէս զի մեր թաքուստը չիմացուի, եւ ետքն սկսանք դիտել թէ ինչպէս վայրենիները նաւուն հարուստ աւարներովը լեցուած՝ գունդ գունդ կղզւոյն ներսի կողմը կ'երթային, բայց անոնց մեծագոյն մասը բոլորովին մերկ մնացած նաւը կրակի տալու զբաղած էին։ Քիչ ժամանակուան մէջ սկսաւ ծառաձեւ ծուխ ու բոց մը մինչեւ կայմին ծայրը բարձրանալ եւ ամէն կողմ տարածուիլ։ Բայց վայրենիք բոցապատ նաւէն հեռանալու փոյթ չէին ըներ, այլ դեռ մնացած երկաթեղէնն ու պղնձեղէնը տախտակներուն մէջէն քակելու զբաղած էին, ու 10,000 կղզեցիներէն աւելի նաւուն՝ եւ անոր քովը կեցող նաւակներուն ու լաստերուն մէջ եւ ծովեզերքը կը գտնուէին։ Մեծ ակընկալութեամբ զարհուրելի դէպքի մը կը սպասէինք որն որ իրօք ալ քիչ մ'ետքը պատահեցաւ։ Իսկզբան սաստիկ ցնցում մը զգացինք, բայց դեռ պայթում մը չեղաւ. վայրենիք սարսափեցան եւ քիչ մը ժամանակ իրենց աւարառութենէն եւ աղաղակէն դադրեցան, բայց հազիւ թէ նորէն իրենց գործքը կ'ուզէին սկսիլ, յանկարծ ահագին որոտման ձայն մը հնչեց որն որ քանի մ'անգամ ետեւէ ետեւ կրկնուեցաւ եւ ամէն

կողմ հուր ու բոց տարածեց։ Օդը փայտի, մետաղի եւ մարդու անդամներու կտորներով լեցուեցաւ, որոնցմէ քանի մը կտոր մինչեւ մեր կեցած բլրին վրայ հասան. ոտքերնուս տակ գըտնուած գետինն երկրաշարժի մը պէս կը դողար եւ ժայռերն ան ահագին վառօդին պայթման արձագանգը քանի մ'անգամ կրկնեցին։

Մայրենիք իրենց ամօթալի մատնութեան արժանաւոր պատիժը բաւականապէս ընդունեցան. հազար հոգիէն աւելի նոյն տեղը մեռան. վիրաւորներուն թիւն ասկէ շատ աւելի էր. ծովածոցն ու ծովեզերքը մեռելներով ծածկուած էր։ Վիրաւորները հոգացող ամենեւին չկար, որոնք անօգնական մնացած չարաչար տանջուելով հետզհետէ հոգինին կը փչէին. ոչ ոք իրենց օգնելու փոյթ կը տանէր. ով որ ոտքը կրնար գործածել՝ ոռնալով եւ պոռալով ամենայն զօրութեամբ կը փախչէր, առանց ետեւը նայելու։

Ասկէ ետքը մեր բլրին վրայ անցուցած 6—7 օրերուն մէջ երեւելի դէպք մը չպատահեցաւ. սպաննած թռչուններս եւ ժողված կաղիններս կ'ուտէինք, բայց աս վերջինը մեզի սաստիկ գլխացաւ մը կը պատճառէր։ Վերջապէս վերջին կարօտութիւնն զմեզ ստիպեց բլրէն դաշտն իջնալու, թէպէտ եւ վայրենեաց ձեռքն իյնալու վախի մէջ էինք։ Բլրէն վար իջնալու փորձն արտաքոյ կարգի դժուարին գործողութիւններէն մէկն էր, որն որ բոլոր կենացս ընթացքին մէջ ինծի պատահեցաւ. ամէն կողմ կամ պատի պէս շիտակ ժայռեր էին եւ կամ խորունկ անդունդներ. արդէն յուսահատութիւնը վրանիս տիրած էր եւ սկսած էինք յայտնի զգալ որ քաղաքը քիչ ժամանակէն մեր կեանքը պիտ'որ յափշտակէ, երբ որ յանկարծ մտքերնիս իյնկաւ որ դարձեալ կակուղ ժայռերուն մէջ ծակեր փորելով կրնանք ան վտանգաւոր վիճակէն պրծիլ։ Աս բանս գլուխ

հանելու համար մեր թաշկինակներէն ու շապիկներէն երկայն չուան մը շինեցինք․ Բեդերս զարմանալի արիութեամբ մը յառաջ անցաւ, եւ շատ անգամ մէկ ձեռքովը դուրս ցցուած ժայռի կտոր կամ պզտիկ թուփ մը բռնած՝ միւսովը ծակերը կը փորէր եւ մէջը փայտի կտորներ կը խոթէր որոնք մեզի սանդխոյ տեղ պիտ՚որ ծառայէին։ Ի վերայ այսր ամենայնի ես երբ որ ան անյատակ անդունդին առջեւն եկայ, բոլոր մարմնով սկսայ դողալ․ բայց վերջապէս մեծ դժուարութեամբ անոր յատակն իջայ ու մարած Բեդերսին բազուկներուն մէջ ինկայ։

Նորէն սթափելէս ետքն ամէն վախ եւ անձկութիւն բոլորովին ինձմէ հեռացած էին եւ այնչափ առոյգցած էի որ կրնայի ամէն վտանգներուն անվեհեր դէմ ելլել։ Մեր վար իջած տեղը շատ հեռու չէր ան կրճէն որն որ մեր ընկերներուն գերեզման եղած էր։ Կարիճներ, օձեր, մողէսներ եւ ուրիշ բիւրազգի սողուններ աս աւերի եւ ապականութեան տեղը կը վխտային։ Կորսուած ընկերներնուս հոգւոյն կարճ աղօթք մ՚ընելէն ետքն, որոշեցինք ծովեզերքն աճապարել ու հոն կրիայ որսալով՝ մեր քաղցն անցընել։ Հազիւ թէ քանի մը հարիւր քայլ յառաջ գացած էինք, յանկարծ այրի մը մէջէն հինգ վայրենիք դուրս յարձակեցան եւ մեզի հասնելով՝ գաւազանի մը հարուածով զԲեդերս գետինը ձգեցին։ Աւազակաց հինգն ալ գետինը պառկողին վրայ ինկան որով ես ժամանակ ունեցայ ինքզինքս ժողվելու եւ ատրճանակներս գործածելու։ Առանց ուշանալու՝ յարձակողաց վրայ հասայ եւ անոնցմէ երկուքը զարկի գետինը պառկեցուցի․ երրորդ վայրենին՝ որն որ իր նիզակովն զԲեդերս զարնել կ՚ուզէր, աս տեսնելով վեր ցատքեց։ Նոյն ժամանակն ընկերս ալ կարող եղաւ ոտք ելլել եւ իր կաշըմբուռն զօրութեամբը վայրենեաց մէկուն

ձեռքէն բիրն առնելով անոնց երեքին ալ գլխուն սկաւառակը ճեղքեց։

Աս ամէն բան այնչափ շուտ կատարուեցան լմնցան որ մենք եղածներուն հազիւ կը հաւատայինք, եւ ապշածի պէս մեռելներուն քովը կեցած անոնց կը նայէինք, մինչեւ որ հեռուէն ականջնիս հասած աղաղակ մը զմեզ մեր թմրութենէն արթընցուց եւ մեր վտանգի մէջ ըլլալը մեզի յիշեցուց։ Կ'երեւայ թէ ինձմէ արձակուած ատրճանակներուն ձայնը վայրենեաց մտադրութիւնը մեր վրայ դարձուցած ըլլայ. չէինք կրնար զմեզ որոշել թէ արդեօք դէպ ի ծովածոց յառաջ երթանք թէ գտնուած տեղերնիս պահուըտինք։ Աս միջոցիս իմ արձակած գնդակներէս զարնուած վայրենիներէն մէկը՝ զորն որ ես մեռուած կը համարէի, ոտք ելաւ եւ կ'ուզէր փախչելով պրծիլ. սակայն զինքը բռնեցինք ու զարնելու մեռցընելու վրայ էինք, երբ որ յանկարծ Բեդերսին միտքը խորհուրդ մ'ինկաւ որ գուցէ կրնանք նոյն մարդը մեր օգտին գործածել, եթէ զինքն ստիպենք որ մեզի ընկերանայ։ Ուստի զինքը հետերնիս առինք եւ նշաններով իրեն իմացուցինք որ եթէ փախչելու փոքր փորձ մ'ընելու ըլլայ անմիջապէս զինքը կը սպաննենք։ Մահուան վախը զինքն ստիպեց որ մեզի հպատակի, եւ սկսաւ մեր քովէն յառաջ երթալ։

Երբ որ այնպիսի տեղ մը հասանք ուր ծառերը կը լմննային եւ ամէն կողմ արձակ դաշտ էր, սարսափով տեսանք որ վայրենեաց բազմութիւն մը կատաղութեամբ եւ ոռնալով մեր վրայ կը վազէ։ Ուզեցինք նորէն ետ դառնալ ու պահուելու տեղ մը փնտռել, բայց նոյն միջոցին ծովեզերքէն երկու մեծ նաւակներ տեսանք, որոնց մէկուն մէջ հարկաւոր եղած թիակներէն զատ նաեւ շատ կրիայներ ալ կը գտնուէին։ Շուտ մը հոն վազեցինք՝ զանիկայ ցամաքէն ծով մղեցինք ու բոլոր զօրութեամբ թի քաշելով բաց ծովն ելանք։

Դեռ ցամաքէն 50 կանգուն հեռացած չէինք երբ որ յանկարծ մտքերնիս ինկաւ որ վայրենիք երկրորդ նաւակը կրնան մեր ետեւէն հանելու գործածել, եւ հարկ է որ ամէն վտանգ յանձն առնելով ետ դառնանք եւ ղանիկայ ալ մեր ձեռքն անցընենք։ Վայրենիք մեր միտքն իմացան եւ սկըսան աղաղակնին աւելի եւս սաստկացընել ու ընթացքնին կրկնապատիկ շուտցուցին որպէս զի մեզմէ յառաջ ծովեզերք հասնին։ Իսկ զմեզ յուսահատութիւնն ու վտանգին սաստկութիւնն յորդորեց որ ճիգերնիս կրկնապատկենք, որով միայն մէկ վայրենի մը մեզմէ յառաջ նաւակին քովը հասաւ. սակայն իր աս գործքին համար չարաչար տուժեց. Թեդերս իր ատրճանակէն արձակած գնդակովն անոր գլուխը ծակեց ու մեռած գետինը ձգեց։ Մենք նաւակը կարող չեղանք հետերնիս առնուլ վասն զի մէկ կողմն աւազին մէջ խրած էր, ասոր համար յատակը ծակծկեցինք եւ անգործածական ըրինք. Նոյն ժամանակն երկու վայրենիք մեր քովն հասան ու կ՚ուզէին ղմեզ նորէն բաց ծովն ելլելէն արգելուլ. սակայն մեր դանակներովը զիրենք դիակ դարձուցինք եւ ամենայն զօրութեամբ թի քաշելով ցամաքէն հեռացանք։ Եւ որովհետեւ գերի բռնուած վայրենին ալ ստիպած էինք մեզի օգնելու, քիչ ժամանակէն վայրենեաց վախէն ազատեցանք։

Ի վերայ այսր ամենայնի վիճակնիս դեռ շատ խեղճ էր. ջախջախ նաւակով մ՚ընդարձակ եւ անապատ ովկիանոսին վրայ կը գտնուէինք, եւ ուրիշ պաշար չունէինք բայց եթէ ըստ պատահման նաւակին մէջ գտնուած երեք կրիաներն։ Ասկէ զատ պէտք էինք մտածել որ բեւեռական երկայնատեւ ձմեռը մօտեցած էր. պէտք էր մեր բռնելու ուղղութիւնը շուտով որոշել։ Մեր ելած կղզւոյն քովերը 6—7 ուրիշ կղզիներ կը տեսնուէին որոնք իրարմէ 5—6 ժամ հեռու կ՚ե-

րեւային, սակայն ամենեւին յօժարութիւն չունէինք առանցմէ մէկուն մօտենալու։ Դէպ ի հիւսիս դառնալը խոհեմութիւն չէր, վասն զի տարւոյն նոյն ժամանակն ան կողմերն ի հարկէ ծովը սառուցով գոցուած էր, ուստի մեր կեանքն ազատելու ուրիշ միջոց չէր մնար՝ բայց եթէ դէպ ի հարաւ յառաջ երթալ եւ հոն մեր ապրուստը հոգալու կղզի մը գտնել։

Ամէն բանէ յառաջ մեր նաւակը քիչ մը նորոգելու ձեռք զարկինք. զգեստներնէս պատռած լաթի կտորներով անոր ճեղքուածները գոցեցինք, աւելորդ թիակներով անոր երկու կողմը բարձրացուցինք, որպէս զի ծովուն ջուրն՝ որն որ նոյն ժամանակը հայելւոյ պէս շիտակ էր, ալէկոծութեան ատեն ներս չմտնէ։ Թիակներէն մէկն ալ կայմի պէս տնկեցինք ու շապիկներնուս մնացած կտորներովը առագաստ մը շինելով՝ անոր վրայ բացինք։ Այս ամենայն պատրաստութիւնները լմըննալէն ետքը նաւակը դէպ ի հարաւ դարձուցինք. օդը շատ հաճոյական էր. մեղմ սղոխ մը հիւսիսէն դէպ ի հարաւ կը շնչէր, ծովուն վրայ ամենեւին սառոյց չէր նշմարուէր։ Կրիաներուն ամենէն մեծը մեռցուցինք, որն որ մեզի ախորժական կերակուր մ'եղաւ. իր խեցին ալ անձրեւի ջուր ժողվելու աման տեղ ծառայեց, ուստի քաղցէն ու ծարաւէն տանջուելու վախ չունէինք։ Այսպէսով 7—8 օր շարունակ յառաջ գացինք եւ այսչափ ժամանակուան մէջ դէպ ի հարաւ շատ յառաջ գացած պիտ'որ ըլլանք, վասն զի չէ թէ միայն հովն, այլ նաեւ ջրին հոսանքն զմեզ նոյն ուղղութեամբ յառաջ կը մղէր։

Մարտին առաջին օրը մեր դիմացն ելլող արտաքոյ կարգի եւ զարմանալի երեւոյթներէն հետեւցուցինք որ բոլորովին նոր եւ անծանօթ գաւառ մը մտած ենք։ Հարաւային հորիզոնին վրայ նուրբ շոգի մը բարձրանալով պատ մը ձեւացուց,

որուն մէջէն ատեն ատեն լուսաւոր բոցեր կ'ել-
լէին, նոյն ժամանակը նաեւ ծովին ջուրն աւելի
ջերմութիւն մ'առաւ եւ իր գոյնն պլպլութիւն
մը կրեց։ Մարտին երկուքին ծովուն կատարեալ
հանդարտութիւնը թոյլ տուաւ որ մեր գերւոյն
հետ երկայն խօսակցութիւն մ'ընենք, որուն լե-
զուն քիչ մը հասկընալու սկսած էինք։ Իրմէ ի-
մացանք որ նոյն կղզեաց խումբին ութ կղզիներէ
կը բաղկանար որոնց ամենուն վրայ Զալեմոն կամ
Բսալեմոն անուամբ թագաւոր մը կ'իշխէր, եւ
թէ իր կղզւոյն բնակիչքը նաւակ չեն շիներ այլ
միայն լաստ կը գործածեն, իսկ ան նաւակներն
ըստ պատահման ուրիշ հեռաւոր կղզիէ մ'իրենց
ձեռքն անցած է. իր անունը Դու-Դու եւ իր
կղզւոյն անունը Զալալ է։

Հետեւեալ օրը ջրին տաքութիւնն աւելի եւս
սաստկացաւ, միանգամայն իր թափանցկութիւնը
կորանցուց ու կաթի նման կերպարանք մ'առաւ։
Մեր եղած տեղը ջուրը կատարեալ հանդարտ էր,
բայց մեզմէ քիչ մը հեռու կատարեալ կ'եռար ու
կը փրփրար։ Օդին հանդարտութիւնը միշտ կը
շարունակէր, ի վերայ այսր ամենայնի ծովուն հո-
սանքն զմեզ մեծ արագութեամբ դէպ ի հարաւ
յառաջ կը տանէր։ Գիտէինք որ բեւեռական ձմե-
րուան ժամանակն հասած է, սակայն ամենեւին
ցուրտ չէինք զգար, միայն զարմանալի թմրութիւն
մը զմեզ գրաւեց՝ որուն պատճառը չկրցանք ի-
մանալ։

Հորիզոնին վրայ երեւցող շոգին սկսաւ աւելի
եւս բարձրանալ. եռացող ջուրը մեզի աւելի մօ-
տեցաւ ու շոգւոյն մէջէն ելլող բոցերն աւելի
կենդանութիւն մ'առին։ Բարակ գորշ մոխրի նը-
ման փոշի մը մեր նաւակին եւ անոր քովերը ծո-
վուն մէջ սկսաւ թափուիլ, որմէ ետքը ջրին ե-
ռալն ու բոցերուն սաստկութիւնը մեղմացաւ։
Զարհուրած վայրենին երեսի վրայ նաւուն յա-

տակը նետուեցաւ եւ ամենեւին կարող չեղանք զինքը համոզել որ անկէ ելլէ։ Մեր հարցումներուն ամենեւին պատասխան չէր տար, այլ միայն երբեմն երբեմն հեծութեան ձայն մը կ'արձակէր։ Նաեւ Բեդերսին վրայ տխրութիւն մը տիրեց ու բերնէն ամենեւին խօսք չէր հաներ։ Ես աս բաներուս շատ միտ չէի դներ, որովհետեւ իմ վրաս ալ անիմանալի թուլութիւն մը տիրած էր։

Մարտի 21ին թանձր մութ մը մեր բոլորտիքը պատեց։ Մոխրի անձրեւը նաւերնուս մէջ սկսաւ դիզուիլ, բայց ծովուն մէջ իյնալուն պէս կը լուծուէր։ Հսկայաձեւ թռչուններ գունդագունդ մեր գլխին վրայէն կ'անցնէին եւ դէպ ի հարաւ կ'երթային։ Աս միջոցիս նաւուն մէջ պառկող վայրենին թեթեւ շարժում մ'ըրաւ, որն որ իր վերջին շարժումն էր, քիչ մ'ետքը միտ դրինք եւ տեսանք որ ամենայն կենդանութիւն իրմէ հեռացած էր....

---

Արթուր աս մօտերս յանկարծ վախճանելով իր պատմութեան վերջին հատուածին ձեռագիրը կորսուեցաւ։ Պատմութիւնն հրատարակողը կը խոստանայ որ եթէ նոյն ձեռագիրը գտնէ, անմիջապէս հասարակութեան կը հաղորդէ։ Նաեւ Բեդերս դեռ ողջ եւ Իլլինոա գաւառին մէջ հաստատուած է, զորն որ հրատարակիչը փնտռել պիտ'որ տայ։ Անտարակոյս իր տալու տեղեկութիւններն Արթուրին պատմութեան անկատար մասը կը լրացընեն։



